


ՀՈՒՆԻՍԻ 1-Ը
ԵՐԵԽԱՆԵՐԻ
ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ
ՄԻՋԱԶԳԱՅԻՆ
ՕՐՆ Է

# ՊԻՈՆԵՐ

1987 6

ՀՈՎԻԿ ՀՈՎԵՅԱՆ

## Եղեգնյա սրինգ

Ես մի եղեգնյա սրինգ ունեի,
Նվագում էի կտուրին պառկած,
Առնելով ձայնը իմ կանչող երգի,
Փոքրիկ մի ամպիկ միշտ իջնում էր ցած:
Նստում էր կողքիս ու աչքերը փակ
Լսում էր երգս կապույտ, հոգեթով,
Հետո շոյում էր գլուխս ու հանկարծ
Ելնում էր երկինք՝ ինձ համբուրելով:
Մի օր էլ ամպս մենակ ցած չիջավ,
Քույր ու եղբայրներ իր հետ վար բերեց,
Ու մեր քաղաքի մունջ տանիքներին
Հորդառատ ու խենթ անձրև սկսվեց:
Ես մի եղեգնյա սրինգ ունեի,
Նվագում էի իմ ամպի համար,
Հիմա սրինգին իմ ձայնակցում է
Այս ամառային անձրևը վարար:

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՅԱՆ

## Գիշեր

Լույսը թեթև ու աննկատ
Սահեց, գնաց,
Նրա հետքով գնաց ծառը՝
Այգում թեթև շրշյուն թողած,
Եվ բլուրը գնաց-գնաց՝
Տեղում թողած մի մութ բարձունք,
Հավքի միջից հավքը թռավ,
Ճյուղին թողած փետուր մի գունդ,
Ամենքն անցան ուրիշ մի տեղ,
Աստղածելով ձգվեցին վեր,
Ու նրանցից ամեն մեկից
Մի բուռ երազ մնաց աչքիս:

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ:

ՀԱՍՑԵՆ՝ 375015, ԵՐԵՎԱՆ 15, ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՓՈՂՈՑ № 15: ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Լույս է տեսնում 1923 թվականից


## Այս համարում 6•87




*Հանձնված է արտադրության 2.IV.87 թ.: Ստորագրված է տպագրության 13.V.87 թ.: ՎՖ 02389: Թուղթ օֆսեթ, $70\times100\,^{1}/_{16}$: Տառատեսակը՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 67032: Պատվեր՝ 812: Գինը՝ 15 կոպ.:*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:*

Сдано в набор 2.04.87 г. Подписано к печати 13.05.87 г. Формат $70\times100\,^{1}/_{16}$. ВФ 02389. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 67032. Заказ 812. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

Շապիկը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ


ՍՏԱՆԻՍԼԱՎ ՍՏՐԱՏԻԵՎ (բուլղար գրող)

# Մենավոր հողմաղացներ

Թարգմանեց ՄԱՐԳԱՐԻՏ ԹԵՐԶՅԱՆԸ

Ամառը վերջանալու վրա էր. օգոստոս ամիսն էր, և մայրիկը սկսեց յուֆկայի պատրաստությունը տեսնել: Խմոր հունցեց, կտրատեց բարակ-բարակ շերտիկներով, դուրս բերեց բակ ու փռեց սավաններին, որ չորանա արևի տակ: Դեղին ձողիկները փայլփլում էին տաքուկ ճառագայթների տակ, ներծծում նրանց լույսն ու ջերմությունը, մի քիչ ամքում էին ու ճթճթում...

Յուֆկան չորանում էր, իսկ ես կանգնել էի կեռասենու տակ ու, մի երկար փայտ ձեռքիս, այն պահպանում էի կատուներից և ճնճղուկներից: Թռչունները, ասենք՝ կատուները նույնպես, յուֆկա շատ են սիրում: Բավական էր բերանս բացած մի կողմ նայեի, անմիջապես վրա կտային ու ճոթճոթացնելով կկտցեին յուֆկան:

Մայրիկը գնաց շուկա և պատվիրեց ինձ, որ մինչև իր գալը աչք չկտրեմ յուֆկայից: Հակառակ դեպքում ինձնից մեծ մարդ դուրս չէր գա: Բոլոր մեծ մարդիկ աչքի էին ընկնում բացառիկ ուշադրությամբ:

— Եվ բոլոր մեծ մարդիկ յուֆկա՞ են պահպանել,— անվստահ հարցրի ես:

—Ամենամեծ մարդիկ պահպանել են,— ասաց մայրիկը:

— Երեք հրացանակիրնե՞րն էլ,— չէի հավատում ես:

— Երեք հրացանակիրները հենց այդ էլ արել են,— միանգամայն լուրջ հաստատեց մայրիկն իր ասածը և ուղևորվեց շուկա:

Կանգնած էի այդպես ու ծտերին էի վախեցնում, երբ մեկ էլ փողոցով անցավ Աթանաս-հիմարիկը: Նա գնում էր բադիկի նման լնգլնգալով և լայն բացված աչքերով նայում էր աշխարհին:

Եվ մինչ կնայեր այդպես, ծաղկին մոտ կթռչեր մի թիթեռ, կպտտվեր մի երկու անգամ ու կնստեր վրան: Աթանասը հիմա էլ թիթեռնիկին կսկսեր նայել: Կզններ ուշադիր, հանգիստ, առանց շտապելու: Թիթեռները չէին վախենում նրանից, գալիս-նստում էին ծաղիկներին, հենց նրա քթի առաջ, ու երկար մնում էին այդպես, չէին թռչում: Աթանասը երբեք փորձ չէր անում բռնել թիթեռը կամ պոկել ծաղիկը:

— Աթանաս, հե՜յ, Աթանաս,— կանչեցի ես նրան,— ի՞նչ է անում Կլարա թագուհին:

— Կլառնետ է գողանում,— պատասխանեց Աթանասը:— Կարլ արքան ու Կլարա թագուհին կլառնետ են գողանում:

Այդ խոսքերը նրան սովորեցրել էր իրենց տան կենվորը, մի ուսանող: Նա շատ բան էր սովորեցնում Աթանասին, բայց վերջինս հիշում էր միայն այն, ինչ դուր էր գալիս իրեն:

— Ո՞ւր ես գնում, Աթանաս,— հարցրի ես:— Զինի՞ թագուհու մոտ ես գնում: Կարող է նա փորձանքի մե՞ջ է, կամ վըտա՞նգ է սպառնում նրան:

Աթանասը ձեռքը թափ տվեց, ծիծաղեց և գնաց փողոցով ներքև:

Իմ թիկունքին վրնջում էին ձիեր, գետնին էին զարկվում սմբակներ, հողն ասես թռչում էր ոտքերիս տակից: Աշխարհը՝ ջահե՜լ, գեղեցի՜կ, թրթռում էր անհամբերությունից, կեռասենու կանաչ տերևները պար էին բռնել իմ գլխավերևում, իսկ ես կանգնել էի ու այդ չարաբաստիկ յուփկա՛ն էի պահպանում...

— Գրողի ծո՛ցը յուփկան,— մեկ էլ կանչեցի ես ու թռա ձիու մեջքին:

Նա ծառս եղավ, սուր վրնջաց, հետո սլացավ դեպի թագուհու դղյակը:

— Մի քիչ էլ դիմացեք, տիկի՛ն,— կանչեցի:— Ես շուտով...

Իմ ձիուկի սմբակների տակից մարգարտածաղիկներ ու կանաչ-կանաչ խոտեր էին թռչում, նրա բաշը ծածանվում էր քամու դեմ, իսկ ականջներում սուլում էր քամին: Կողքի անտառից հանկարծ դուրս ցատկեցին կարդինալի ձիավորները ու կտրեցին իմ ճամփան:

— Պարոնա՛յք,— կանչեցի ես,— իհարկե, դեռ հարց է, թե դուք ինչ պարոններ եք, բայց որպեսզի զուր ժամանակ չկորչի, ահա ես ձեռնոց եմ նետում ձեզ: Պաշտպանվե՛ք, պարոնայք:

Իմ ժանյակե ձեռնոցը ընկավ ձիու ականջին: Նա վախեցավ ու ցած գցեց իր հեծյալին: Մնացած ձիավորները եկան, հովհարաձև շրջապատեցին ինձ: Եվ ահա՝ թրերը փայլփլում էին արևի տակ, խթանները՝ զվարթ զնգզնգում, մեր շուրջը աշխույժ սուլում էր քամին, իսկ կարդինալի մարդկանց աչքերում սաստկանում էր վախը...

— Մեկ-մե՜կ, պարոնայք, մեկ-մե՜կ,— կանչում էի ես, և իմ թուրը վետվետում էր կայծակի նման:— Բոլորիդ էլ հերթ կհասնի, մի՛ անհանգստացեք: Ազնիվ խոսք եմ տալիս ձեզ:

Կարդինալի կտրիճները սլացան դեպի գետափի փոքրիկ մարգագետինը, իսկ ես խթանեցի ձիս և նրա գլուխը դարձրի դեպի դղյակը, որ իր աշտարակները հըպարտ-հպարտ ցցել էր մոտիկ բլրակի գագաթին: Դարպասների մոտ ձիս՝ վազելուց ուժասպառ ու շնչակտուր, տապալվեց հողին: Ես ոտքս դրեցի նրա վրա և թուրս մերկացնելով, սլացա պանդուղքներով վեր: Վախեցած սպասավորները ծնկածալ փռվում էին իմ առաջ, պարսկական գորգերին...

— Տիկի՛ն, դուք ազատ եք,— իմ հիասքանչ ձայնով կանչեցի ես, թագուհուն դիմելով, որ լաց էր լինում գոթական պատուհանի մոտ կանգնած:

— Տիկի՛ն, դուք ազատ եք,— ձայնեց ինչ-որ մեկը նույնպես, և ես ճանաչեցի Աթանաս-հիմարիկի ձայնը:

Թագուհին դեպի ինձ դարձրեց իր աչքերը: Դրանք լի էին արտասուքով: Ես շուռ եկա և իմ կողքին տեսա Աթանասին:

— Մի րոպե, տիկին,— մեղավոր ասացի ես և ցած նետվեցի ձիուց:— Մի րոպե... Թե չէ յուփկաս գնա՜ց:

Թագուհին ինձ էր նայում չհասկացող աչքերով: Հավերը վրա էին տվել և արագ-արագ կտցահարում էին յուփկան: Ես փայտովս քշեցի նրանց և ասացի Աթանասին.

— Աթանա՛ս, սա ի՞նչ բան է, ինչո՞ւ չես պահպանում յուփկան: Թագուհուն ես առանց քեզ էլ ազատեցի:

— Տիկի՛ն, դուք ազատ եք,— ուրախ բացականչեց Աթանասը:— Ես ազնիվ խոսք եմ ասում ձեզ:

Այդ խոսքերը, ինձ թվում է, շատ էին դուր եկել նրան: Նա շատ էր սիրում անընդհատ կրկնել, խաղ անել դրանց հետ, թեև տարիքով բավականին մեծ էր ինձանից: Զնայած ես այնքան էլ համոզված չեմ, որ դա այդպես է: Նա բա-



Նկարը ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

վականին տարիքով էր փաստաթղթե՞րո՞վ, իսկ իրականում Աթանասը չէր ծերանում: Նրա տարիքը միշտ մնում էր նույնը, ժամանակը նրա կողքով էր անցնում, չէր փոխում նրան: Ժամանակը կարծես չէր նկատում նրան, կամ... գուցե նրանք ընկերնե՞ր էին: Աթանասը մշտապես երիտասարդ էր, նրա մեջ ոչ մի բան չէր փոխվում: Հասակը մնում էր նույնը, դեմքին ոչ մի կնճիռ չէր ավելանում, աչքերը փայլում էին տղայական խանդավառությամբ: Այդպիսին էլ պատկերել էր նրան Մարդը, որը երբեք սուտ չէր ասում. նա, իրոք, ջահել փայլատակող աչքեր ուներ: Եվ եթե այդ նկարը չլիներ, մենք երբեք ոչինչ չէինք իմանա Աթանասի մասին:

— Աթանա՛ս, թագուհին ազա՛տ է,— ասացի ես,— բայց մենք աչքից բաց թողեցինք յուֆկան: Տես՝ ինչպես են հավերը կտցահարել:

— Թագուհին ազատ է,— կրկնեց Աթանասը:

— Բարի օր, Աթանաս,— այդ րոպեին ասաց մայրիկս, որ պարզվում է՝ արդեն վերադարձել էր շուկայից:— Այդ ի՞նչ թագուհու մասին եք խոսում: Կլարայի՞... Նույն այն Կլարայի, որ կլառնետնե՞ր է գողանում:

— Թագուհին ազատ է, մորաքույր,— ժպտաց նրան Աթանասը,—ազնիվ խոսք:
— Ահա՜ թե ինչ,— լավ հասկանալով նրան, ասաց մայրիկը:—Իմ տղան դարձյալ գլուխն առել, կորել է ինչ-որ տեղ: Չնայած ես նրան խնդրեցի աչք չկտրել յուփկայից:
— Ես...
— Եվ հավերն էլ կտցել են յուփկան: Մինչ նա թագուհուն է ազատել, նրանք իրենց գործը տեսել են...
— Ախր, ես միայն մի քանի րոպեով...
— Այո, իհարկե, դղյակը բոլորովին մոտիկ է՝ մի երկու քայլի վրա:
Ես կախեցի գլուխս և ձևացրի, թե սարսափելի զղջացել եմ...
— Իսկ ձմռանը, որ մեր յուփկան վերջանա, դու կգնա՞ս թագուհու մոտ, փոխարինաբար յուփկա կխնդրե՞ս, մի հինգվեց կիլոգրամ,— հարցրեց մայրիկը,— եթե դղյակն այդքան մոտիկ է:
Աթանասը օգտվեց նրանից, որ մայրիկը ինձ հետ է խոսում, դուրս սողոսկեց դռնից: Գլուխս կախած՝ ես միտք էի անում, թե այս անգամ ի՞նչ պատիժ է սպասվում ինձ:
Ես գիտեի, որ մայրիկը չի նեղանում ինձնից: Բայց ինչպես նա ասում էր երբեմն հայրիկին, պատիժը դաստիարակիչ ազդեցություն է ունենում: Իսկ մեր փողոցի տղան պետք է դաստիարակված լիներ, ուրիշ կերպ չէր լինի: Այդ խոսքերը լսելով՝ հայրիկը խրախուսաբար գլխով էր անում և շատ հաջող կերպով ձևացնում էր, որ համաձայն է: Բայց բավական էր, որ մայրիկը նայեր նրա դեմքին, էլ չէր համբերում, խեղդվում էր ծիծաղից:
Ես ջանում էի նմանվել հայրիկին և ինձ պահել ճիշտ նրա նման, բայց երևի դա ինձ չէր հաջողվում, որովհետև մայրիկը չծիծաղեց:
— Խաղ անելը, իհարկե, լավ է, բայց ձմռանը պետք է մի բան ուտել, չէ՞,— ասաց մայրիկը:
— Դեռ ամեն ինչ կորած չէ,— պատասխանեցի ես:— Մենք էլ հավերին կուտենք. չէ՞ որ յուփկան նրանց փորում է:
Մայրիկը ծիծաղեց, շոյեց գլուխս և փախցրեց հայացքը, որպեսզի ես չտեսնեմ: Բայց առանց տեսնելու էլ գիտեի, որ նրա աչքերը թրջվել են ծիծաղելուց:
— Տիկի՛ն,— ասացի, որպեսզի զվարճացնեմ նրան,— սրանից հետո ես ուշադիր կլինեմ: Ազնի՛վ խոսք եմ տալիս ձեզ...
Մայրիկը ծիծաղեց ու մտավ տուն:
Իսկ ես նորից հեծա իմ ձին և սլացա առաջ, բայց այս անգամ՝դեպի հողմաղացները: Չէ՞ որ մենք հենց նոր էինք կարդացել «Դոն Կիխոտը»:
Մեր զրահները փայլփլում էին արևի տակ, մեր ռոսինանտները վրնջում էին քամու նման՝ փոշոտ փողոցներով, մեր ասպետական նետերը սուլոցով թրատում էին օդը:
Մենք զայրույթով էինք լցված չար հսկաների դեմ՝ նրանց արած բոլոր անարդարությունների համար: Նրա համար, որ բարի մարդիկ տառապում են, իսկ չարերը՝ հաղթանակում, որ մարդկանց մի մասը ամեն ինչ ունի, իսկ մյուսները ոչինչ չունեն: Նրա համար, որ արդարությունը բանտված է երկաթյա շղթաներով, իսկ անարդարությունը թևածում է աշխարհով մեկ, որ երկրի վրա դեռ շատ կան մարդիկ՝ տխուր աչքերով ու վախեցած քայլվածքով... Նրա համար, որ հսկաները կախարդում են մեր դուլցինեաներին և խլում նրանց մեր ձեռքից:
Այսպես թրև էինք գալիս մենք օգոստոսի վերջերին, թավալ տալիս կանաչ, փափուկ մարգագետիններում. մեր ռոսինանտները հողմի նման սուրում էին ընդդեմ չար հսկաների, որ սպառնական գալիս էին դեպի մեզ... Բայց մեր սրտերը չէին դողում, թեև լի էին զայրույթով ու ոգևորությամբ: Ջահել էինք, և մեր աչքերը փայլատակում էին, իսկ մեր ձեռքերում ամուր սեղմել էինք ասպետական նետեր...

Նորից ու նորից օգոստոս է: Ես նայում եմ կանաչ դաշտերին: Դրանք ամայի են: Մենք վաղուց մեծացել ենք, ամուսնացել, դարձել ավելի խելոք, իսկ մի քանիսը մեզանից անկասկած մեծ մարդ կդառնան: Նրանք միշտ արտասովոր, ուշադիր են, չնայած հիմա արդեն այլևս յուփկա պարտավոր չեն պահպանել...
Եվ միայն Աթանաս-հիմարիկն է, որ չի ծերանում, և նրա աչքերը փայլում են տղայական խանդավառությամբ: Նա դեռ էլի թրև է գալիս ինչ-որ տեղեր և սուրալով մեր կողքով, կանչում. «Հառա՜ջ, տիկին, դուք ազատ եք...»:
Բայց մենք միայն ժպտում ենք նրան նայելով, իսկ նա թռչում է առաջ, դեպի միայնակ հողմաղացները...

# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ





ԿԱՐԻՆԵ ԵՂԻԿՅԱՆ, 10 տ. Երևան

ԱԿՍԵԼ ՈՍԿԱՆՅԱՆ, 10 տ. Երևան





# ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

ՄՆԱՑԱԿԱՆ ՋՈՀՐԱԲՅԱՆ

# Իմանա՞լ, թե՞ կարդալ

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Երբ մարդ մտահոգված է, անհանգիստ, փորձում է պարզել պատճառը: Վերլուծում է մտքում կամ բարձրաձայն, համադրում ու հակադրում դեպքերն ու իրադարձությունները, աշխատում է հասկանալ մտահոգություն, անհանգստություն պատճառող առարկան, երևույթը:

Չեմ կասկածում, որ դու էլ, պատանի ընթերցող, այդպես ես վարվում: Չնայած պետք է ասեմ, որ իմ տարեկիցներից շատերը, քո շրջապատի մեծահասակներից ոմանք այն կարծիքին են, թե դու երեխա ես: Պարզից էլ պարզ է, որ այդպես է, բայց նրանք երեխա ասելով քո տարիքը միայն նկատի չունեն: Ուզում են ասել, որ դու, իբր, չես կարող ճիշտ վերլուծություններ, եզրակացություններ անել: Նրանք արդեն այսօր նկատվող քո այդ կարողությունը թողնում են հետագային: «Կմեծանա, կյանք կմտնեն, թող այն ժամանակ էլ մտահոգվեն»,— լսում եմ ես նրանց խոսքն ու տեղնուտեղն էլ հակառակվում. «Դուք լավ չգիտեք երեխաներին, չեք ճանաչում»: «Այսօր նրանց գլխավոր մտահոգությունը պետք է լինի սովորելը,— շարունակում են ընդդիմախոսներս,— թող միայն սովորեն, լավ սովորեն, մնացածը դեռ կընհասցնեն, ժամանակ շատ կա»: Ես էլի առարկում եմ. «Հետո ուշ կլինի,— ասում եմ,— այն, ինչ այսօր է կարևոր, այսօր պետք է տեսնել, այսօր պետք է այդ մասին խոսել, ՀԵՏՈ-ն կարող է չլինի, կարող է անդառնալիորեն կորցնենք այն, ինչ այսօր չենք նկատում, չենք գնահատում»: Ո՞վ է ճիշտ, ով՝ սխալ: Գուցե դո՞ւ օգնես մեզ, որովհետև խոսքը հենց քո մասին է: Իսկ որ կարող ես մեր բանավեճը ավելի հետաքրքիր, ավելի գործնական դարձնել, ես համոզված եմ: Ինչո՞ւ: Ասեմ: Որովհետև դու այսօր դասամատյանում գնահատականներ ստանալու, գիտելիքներ կուտակելու համար չես միայն դպրոց գնում: Դու ապրում ես, դու սովորում ես ապրել: Ծիծաղելի կլիներ մտածել, որ յուրաքանչյուր աշակերտ գալիս ու գնում է դպրոց միայն գնահատականներ ստանալու համար: Էլ ո՞ւր մնացին դասամիջոցները, ձեր կատակները, ընկերներն ու ընկերուհիները, դպրոցից տուն, տնից դպրոց ճանապարհը, զվարճալի պատմությունները էքսկուրսիաների օրերին, հուշե՞լ, թե չհուշելու, տնայինը արտագրե՞լ, թե ինքնուրույն կատարելու, նույն նստարանին նստել-չնստելու կասկածները:

Ես մի յոթերորդ դասարանցի տղայի եմ հանդիպել, որ դպրոց էր գալիս միայն դասամիջոցների համար ու դա ոչ մեկից էլ չէր թաքցնում:

Մի խոսքով, դու ապրում ես, ապրում ես քո ուրախություններով ու տխրություններով, քո հաշտությամբ ու վեճերով՝ մեծահասակների համար մի քիչ անսովոր ու անծանոթ (որպես գաղտնիք ասեմ, որ շատերը, մեծանալով, երևի մոռանում են իրենց դպրոցական օրերն ու տարիները) կյանքով:

Հետևաբար, ես համաձայն չեմ նրանց հետ, ովքեր ասում են. «Դպրոցն այլ բան է, կյանքը՝ այլ: Ա՜յ, կավարտեն դպրոցը, դուրս կգան մեծ կյանք ու նոր կսովորեն ապրել»: Դպրոցը հենց կյանքն է իր առօրեական բոլոր դրսևորումներով:

Կարծում եմ արդեն ժամանակն է, որ իմ մի մտահոգությունը ձեզ հետ կիսեմ: Կուզենայի, որ միասին մտածենք այդ մասին: Օգնեք ինձ, եթե կարիք լինի՝ ճշտեք:

Ինձ անընդհատ անհանգստացնում է այն, որ դու, քո ընկերը, մի խոսքով, դպրոցականը, սովորում եք դասերը, գերազանց ու լավ գնահատականներ ստանում, բայց հենց անհրաժեշտ է լինում իրականում, կյանքում օգտագործել ձեռք բերած գիտելիքները, չեք կարողանում: Որքան փնտրում եմ այս երևույթի պատճառները, այնքան ավելի դժվարանում եմ ճիշտ պատասխան գտնել:

Արայիկ Ծահբազյանը ութերորդ դասարանում է սովորում: Գերազանցիկ է: Ծնողներն ու ինքը համոզված են, որ մաթեմատիկոս է դառնալու: Հրաշալի գիտի հանրահաշիվ ու երկրաչափություն: Նրանց տունը վերանորոգում էին, ու ես պատահաբար հյուր եղա: Արայիկի հետ փորձեցինք մի խնդիր լուծել. երեսպատման քանի՞ սալիկ պետք է գնի հայրը, որ տեսքի բերվի լոգարանը: Արայիկը մետրը ձեռքին անօգնական նայում էր մեկ ինձ, որ կրակն եմ գցել իրեն, մեկ՝ հորը: Չգիտեր որտեղի՞ց սկսի, ի՞նչ անի: Բացատրությունները չօգնեցին: Նա չէր կարողանում որոշել լոգարանի ուղղանկյունաձև պատերի մակերեսները: Ստիպված խնդիր կազմեցի: Վճռեց: Գըտավ ընդհանուր մակերեսը, իսկ այդ մակերեսի վրա քանի սալիկ կտեղավորվի՝ չկարողացավ որոշել: Էլի խնդիր կազմեցի, էլի վճռեց:

Արայիկի հետ նման մի քանի խնդիրներ էլ լուծեցինք, որ նա անցել էր դեռևս հինգերորդ դասարանում: Մի դեպք պատմեցի, թե ինչպես են աշակերտներն օգնել գյուղսովետի աշխատակիցներին՝ չափագրել հողակտորը: Այն երկրաչափական սեղանի տեսք ուներ: Երեխաները, որոնց ուսուցիչն ուղարկել էր իր փոխարեն, անմիջապես հիշում են բանաձևը, չափում հողակտորը, տեղադրում արժեքներն ու մեկ քառակուսի սանտիմետրի ճշտությամբ որոշում հողակտորի մակերեսը, վերածում հեկտարի: Այս դեպքը ոչ մեկը գյուղում չի մոռանում: Գյուղում դպրոցի և աշակերտների մասին մեծ հարգանքով են խոսում:

Ծիշտ այսպես էլ մի քանի տարի անընդհատ աշխատանքի դասեր անցած յոթերորդցի Կամոն չէր կարողանում մայրիկին օգնել՝ վերանորոգել հատակը մաքրելու խոզանակը:

— Բա էլ ի՞նչ եք անում աշխատանքի ժամերին,— իրավացիորեն զանգատվում էր մայրը:

Իսկ վերը հիշված աշակերտներն իրենք են շրջում տնից-տուն, հավաքում վերանորոգման կարիք ունեցող իրերը, վերանորոգում ու հանձնում անչափ ուրախացած համագյուղացիներին:

Խոսքի ու գործի, իմացածի ու կատարածի այս տարօրինակ շեղումն է իմ մըտահոգությունը:

Սուտասանին, ծույլին, անբանին հարցրեք, ու նա ձեզ դասը գերազանց իմացող աշակերտի պես կպատասխանի, որ ազնվությունը, աշխատասիրությունն ու բարությունը զարդարում են մարդուն, որ...

Հետո՞... Ի՞նչ է ստացվում: Իմանալն այլ բան է, այդպես ապրելը՝ ա՞յլ:

... Ես այդ աղջկա մասին մանրամասներ իմացա, երբ արդեն գիտեի, որ անազնիվ մարդ է:

Կարդում եմ նրա շարադրությունները: Ինչ ասես չկա դրանցում: Մեծացող մարդու ճիշտ դատողություններ, կյանքը պարզ ճակատով, բաց աչքով, շիտակ ապրելու ինչպիսի՜ հրաշալի ձգտում: Լըսում եմ նրա մասին դասղեկի, ուսուցիչների, ընկերուհիների կարծիքները: Հրաշալի մարդ է, լավ աշակերտ, բարի, ազնիվ, նվիրված... Կարելի է անգամ ակնարկ գրել այդ աշակերտուհու մասին, բայց, ցավոք, արդեն գիտեմ, որ անազնիվ արարք է թույլ տվել: Արա՞րք: Դատեք ինքներդ, ութերորդ դասարանցին արտագրում է ուրիշի բանաստեղծություններ, ուղարկում խմբագրություն, ուր, անտեղյակ անցուդարձին, չկասկածելով դպրոցականի ազնվությանը, տպագրում են բանաստեղծություններից մեկը: Հետո՝ ինչպես միշտ, մախաթը պարկի մեջ անկատ չի մնում: Հրավիրում են թերթի խմբագրություն, զրուցում ամենատարբեր հարցերից, շնորհավորում նրան, փորձում պարզել արդեն տասնվեցամյա աղջըկա ով լինելը: Խմբագրությանը հետաքըրքրում էր մի հանգամանք, որը նույնքան մտահոգում է և ինձ. ո՞րն է այդ աղջիկը՝ շարադրությունների հեղինա՞կը, իր մասին ասված շռայլ խոսքերի տե՞րը, թե՞ մի մարդ, որ արտագրում է ուրիշի բանաստեղծությունը, որ գիտի բոլոր ճըշմարտությունները, բայց՝ ուրիշի՜ն ասելու համար, դաս պատասխանելու և գնահատական ստանալու, փոքր եղբորը, հոկտեմբերիկներին խորհուրդներ տալու համար: Ու որքան երկար էր ձգվում նրա հետ զրույցը, ու որքան երկար էր ձգվում նրա վատ խաղը, այնքան ավելի ծանր էր դառնում շարադրության տողերը հիշելը:

Աննկարագրելի փոփոխություններ տեղի ունեցան, երբ նրան հայտնեցին, որ բանաստեղծություններն արտագրված են: Արցունքների միջից հազիվ լսվում էր ձայնը.

— Խոստանում եմ, էլ երբեք, երբեք չի կրկնվի... Հասկացա, վատ, շատ վատ բան եմ արել, հավատացեք...

Հավատա՞նք, որ մյուս օրը դպրոցում հետաքրքրվողներին այդ աղջիկը կասի ամեն ինչ, ինչպես եղել է, թե՞ կշարունակի սուտը, որն արդեն ավելին է, քան դասը չսովորելու համար հորինված պատճառաբանությունը: Կշարունակի այսպե՞ս. «Ուզում էին ծանոթանալ, խորհուրդ տվեցին շարունակել գրելը...»:

Թե՞ ... թե համարձակություն կունենա բոլորին ասել, որ խմբագրությունում նրան «երկուս» են նշանակել անցած բոլոր շարադրությունների և էլի ինչ-ինչ բաների համար:

Մի՞թե կարևոր չէ գտնել պատճառը, մի՞թե ա՞չ էլ, պատահի բարեկամներ, չի վարակում իմ մտահոգությունը: Ո՞վ է նրանց դասերի հեղինակը:

Այսօր դու սովորում ես ապրել ու ապրում ես բոլորի հետ, բոլորի կողքին: Կարողանո՞ւմ ես ճիշտ կողմնորոշվել, ո՞րն է լավը, որը՝ վատ, բարին չարից տարբերո՞ւմ ես, կարելին ու անկարելին ո՞ւմ հետ ես պարզում: Խոսքով դու այդ ամենը գիտես, իսկ գործո՞վ...

Միամտություն կլինի մտածել, թե Իջևանի № 4 դպրոցի 7-րդ դասարանցի Տիգրանուհի Օթարյանը չգիտի, որ դասերից փախչելը վատ բան է, մեր դպրոցներում գործող օրենքներով պատժելի արարք է: Սակայն միաժամանակ գրում է. «Մի անգամ ամբողջ դասարանով որոշեցինք թողնել վերջին դասը և գնալ տուն: Կարելի է ասել, որ փախչում էինք դասերից»: Նամակն այն մասին է, որ երկու տղա, այնուամենայնիվ, մնացել են



դասարանում: Մի կողմ թողնենք ընկերություն, հավատարմություն, այլ հասկացությունները, դրանց մասին՝ մեկ ուրիշ անգամ, ինձ անհանգստացնում է Տիգրանուհին, որ հանգիստ խղճով գրում է մի արարքի մասին, որի իրավունքը չունի. ինքն էլ դա լավ գիտի և, համենայնդեպս, բացականչում է. «Մի՞թե դա ընկերություն է»: Ինչպե՞ս չասես. սիրելի Տիգրանուհի, մի՞թե այսպես կարելի է դատել, և գլխիվայր շրջել բարոյական հասկացությունները...

Ումի՞ց են սովորել յոթերորդցիները: Բարձր դասարանցիների՞ց: Իսկ նրա՞նք...

Մեծ է օրինակի ուժը: Այնքան տարբեր են դրանք: Ցանկության դեպքում կարելի է հիշել մեծահասակների այնպիսի արարքներ, որոնք երբեք չի կարելի ընդօրինակել: Ցավոք, այդպես լինում է: Այդ մասին և՛ գրում, և՛ մտահոգվում են ձեր հայրերն ու մայրերը, անհանգստանում են ուսուցիչները, բոլորը: Կարևորը՝ դո՛ւք տարբերակեք:

Էջմիածնի շրջանի դպրոցներից մեկում աշխատում էր մի ավագ ջոկատավար, որին նմանվել պետք չէ, և լավ է, որ պիոներները չեն ձգտել նմանվել նրան: Տարիներ շարունակ այդ ավագ ջոկատավարը երեխաներին հասցեագրված հարյուրավոր նամակներն ու թղթակցությունները անտարբեր գցել է աշխատասենյակի դարակը՝ նեղություն չտալով իրեն գոնե ընթերցել դրանք: Իսկ այդ նամակների մեջ կար մեկը, որի հեղինակը՝ մի տարիքով լիտվուհի, հեռու Լիտվայից գրում էր Էջմիածնի շրջանի հենց այդ դպրոցի աշակերտներին՝ նրանց համագյուղացու մասին: «... Նամակ գրեք Աշխեն մայրիկին, բալիկներս,— գրում է լիտվուհին:— Նա նամակի է սպասում, նամակը կօգնի, որ շուտ ապաքինվի, նա ամբողջ կյանքում նամակի է սպասել: Գրեք և իմ աղջկան՝ ահա հասցեն, նա էլ ձեր տարիքին է, շատ կուրախանա...»: Այսպիսի մի նամակ, որ տարիներով գրասենյակի անհոգի տիրոջ պատճառով անարձագանք ու լուռ է մնացել, մինչդեռ մի քանի տողը միայն Աշխեն մայրիկին կարող էր ապրելու ուժ, ոգևորություն, հավատ ներշնչել:

Կան այսպիսի օրինակներ, դուք էլ դրանցից շատերը գիտեք, լսում եք: Այլ բան է լսելը, իմանալը, այլ՝ այդ մասին դատողություններ անելն ու հետագայում դրանք կրկնելը: Վատը վարակիչ է, հիշեք:



Երևանում ապրում և աշխատում է մի հիանալի ուսուցչուհի՝ Վարսիկ Քամանչաջյանը: Նրան էլ անհանգստացնում են բաներ, որ նկատվում են աշակերտների մոտ:

— Երեխաները դադարել են հարց տալուց...,— անհանգստացած գրում է նա:— Ինչո՞ւ: Որովհետև շատ ուսուցիչներ կոպտում են երեխային. «Հլա դասդ սովորի՛ր, հետո հարցեր կտաս: Հարց տվողիս նայե՛ք...»:

Դուք էլ եք երբեմն ականատես լինում նման բաների. ինչո՞ւ Գայանեին էլի «հինգ» նշանակեցին, իսկ Անուշին, որը հրաշալի պատասխանեց, նորից՝ «չորս»: Այսպես էլ է լինում:

Մեկ ուրիշ ուսուցիչ էլ՝ Խ. Երիցյանը, գրում է, որ որոշ մանկավարժներ հայտարարում են. «Վաղը դպրոց չգաք, ես վաղը դասի չեմ գալու»: Երբեմն էլ կոպիտ են լինում որոշ ուսուցիչներ, խոսում են այնպես, որ վայել չէ ուսուցչին: Դեպքեր են եղել, երբ դիրեկտորն ինքն է նշանակել ու ազատել պիոներական դրուժինայի խորհրդի նախագահին: Էլի՞ թվեմ: Հավատացեք, որ կարելի է շարունակել: Ուրեմն, պատահում են և նման դեպքեր: Բայց նայեք ձեր չորս կողմը, տեսեք թե ինչքան շատ են նրանք, ովքեր ձեզ համար ուսուցչի իդեալ են, ովքեր նվիրված են իրենց գործին, երեխաներին:

Ժողովուրդն հենց այնպես չի ասում. «Առանց փուշ վարդ չի պատահի»: Բայց տեսե՞լ եք երբևէ մեկին, որ միայն փշերից փունջ կազմի: Այդ փշերից ձեզ դեռ կհանդիպեն: Կտեսնեք դրանց հենց ձեր ընտանիքում, բակում, թաղում, քաղաքում: Կտեսնեք դպրոցում, կինոթատրոնում, ավտոբուսում: Ստիպված կլինեք շփվել նրանց հետ, խոսել, բանավիճել: Երբեմն պարտավոր կլինեք կատարել նրանց կարգադրությունը, որովհետև այդ փշերից մի քանիսն էլ հետո դիրեկտորներ կարող են դառնալ, նստել պետերի աթոռներին: Տեսեք, իմացեք, բայց մի մոռացեք, որ դուք լավ, բարի, ազնիվ դասեր եք առել ու առնում դպրոցում: Ընդօրինակեք լավը, պայքարեք վատի դեմ:

Նաև՝ այն վատի, որ ձեր ներսում է, երբեմն՝ նույնիսկ ձեզնից թաքուն: Մի խոսքով, սկսեք ինքներդ ձեզանից:

Եթե հաղթեք ինքներդ ձեզ, կհաղթեք նաև ամեն ինչում: Իսկ եթե պայքարեք միայն շրջապատում նկատվող վատի դեմ, մոռանալով ձեր անձը, ապա ձեր ջանքերը, մեղմ ասած, զուր կլինեն...

ՋԱՆՆԻ ՌՈԴԱՐԻ

*«Կարելի է նկարագրել մարդկանց, պատմելով կատուների մասին, և կարելի է խոսել լուրջ ու կարևոր հարցերից՝ ուրախ հեքիաթներ պատմելով».— գրել է Ջաննի Ռոդարին։*

*Իտալացի հանրահայտ մանկագրի «Չիպոլինոյի արկածները» հեքիաթի հերոսը վաղուց արդեն աշխարհի երեխաների բարեկամն է դարձել։ Ռոդարին հեղինակ է նաև բազմաթիվ այլ հեքիաթների և բանաստեղծությունների։*

Թարգմանեցին
Գ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ,
Ա. ՇԵԿՈՅԱՆԸ
Է. ՄԻԼԻՏՈՆՅԱՆԸ

## Հույս

Թե մի խանութ ունենայի,
փոքրիկ սենյակ՝ մեջը մի լույս,
ես վաճառել կուզենայի
գիտե՞ք, թե ինչ, ասեմ ձեզ՝ հույս։

«Հե՜յ, մոտեցեք, հույս կա էժան,
վաճառում եմ առանց շահի,
հինգ-վեց հոգու փայը սրտանց
ես տալիս եմ ում պատահի։

Իսկ աղքատին, ով անհույս է
ու փող չունի, որ այն գնի,
ամբողջ եղած-չեղած հույսը
կվաճառեմ միայն ձրի»։

## Երրորդ, երկրորդ, առաջին

Երրորդ տեսակի մի վագոնի մեջ
Ջինվորն է նստած ու բանվորը խեղճ։

Եվ կա մի պառավ, որ իր զամբյուղում
Հավ է թաքցրել՝ շատ է երկյուղում։

Ինքը տոմս ունի, իսկ հավիկը՝ չէ,
Ախ, հանկարծ չգա անխիղճ հսկիչը։

Երկրորդ տեսակի վագոնը, սակայն,
Իր ձեռքն է առել մի վաճառական։

Շատ հարմարավետ վագոն է, համ էլ
Ռեկլամ կանի իր պանիրը համեղ։

Իսկ առաջնակարգ վագոնը արդեն
Զբաղեցրել է մի միլիարդատեր։

Օտարերկրացին շատ է բարձրագոչ,
Ասում է.— Կառնեմ Իտալիան ամբողջ,

Ինձ շատ դուր եկավ ձեր երկիրը շեն,
Դե շուտ ինձ ասեք գինը՝ ի՞նչ արժե։

Ուղեկցորդն ասաց մեղմիկ ժպիտով.
— Չենք վաճառում մեր երկիրը, պարոն։



# Ծուռ տված հեքիաթներ

Կար-չկար մի անմեղ գայլ,
Նա ուներ մի մեծ զամբյուղ,
Եվ տանում էր տատիկին
Կարկանդակ ու ձկան յուղ,
Բայց դու արի ու տես, որ
Մութ անտառում դեմն ելավ
Կարմիր գլխարկնահավոր,
Իսկ թե հետո ի՞նչ եղավ՝
Նրանցից ո՞վ ո՞ւմ կերավ,
Դու ինձնից լավ կիմանաս՝
Ոնց կավարտվի հեքիաթն այս:

Եթե շուռ տանք ամեն օր
Հեքիաթները մենք բոլոր,
Ահա թե ինչ կստացվի.
Մոխրոտը չի լվացվի,
Առաջվա պես անլվա
Միշտ կաթսաներ կլվա,
Իսկ իր տգեղ քույրացուն
Եվ իր դաժան մերացուն
Կապրեն ուրախ, անտրտում,
Թագավորի պալատում,
Կուրախանան շատ իրենք,
Իրենք, սակայն ոչ թե մենք:
Դշխուհին էլ չի քնի
Եվ կմնա միշտ անքուն,
Հեքիաթներն էլ կավարտվեն
Տխուր՝ ինչպես մեր կյանքում:

# Մանուկ լուսինը

Մանուկ լուսինն այս
Մենք ում նվիրենք—
Ահա թռչում է
Դեպի արևելք:

Հրազեն ունեք,
Պարոն գեներալ,
Մենք ոչ մի լուսին
Չենք կարող ձեզ տալ:

Լուսինը գուցե
Ձեզ թվա թիրախ,
Այնքան կրակեք,
Դարձնեք մի մաղ:

Ծլատ մարդուն էլ
Մենք չենք վստահի.
Նա դրամարկղ
Խեղճին կտանի:

Եվ էլ չենք տեսնի
Երբևէ լուսնին,
Կարոտ կմնանք
Տեսքին ու լույսին:

Քեզ էլ, ֆուտբոլիստ,
Մենք լուսին չենք տա.
Լուսնյակը գուցե
Քեզ գնդակ թվա:

Եվ քո ամեն մի
Հարվածի համար
Պահանջես մեզնից
Ահռելի գումար:

Եկեք լուսինը
Մանուկներին տանք՝
Նավարկեն զվարթ
Վերում կապուտակ:

Իրենց կարթերով
Հրաշքներ որսան,
Բերեն Իտալիա
Ու մեծերին տան:

Նկարը՝ ԱԾՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ՎԱՐՈՒԺԱՆ ԱՅՎԱԶՅԱՆ

# Ծաղիկների դաշտը հեռու

Այնտեղ խաղաղ, այնտեղ զվարթ առավոտ էր ծփում կարմիր: Այնտեղ ցոլուն ու դողդոջուն ցողն էր փայլում գունըզգունենիկ: Այնտեղ բացվում ու դանդաղիկ ծաղկաթերթն էր գույներ առնում: Այնտեղ պայծառ, մեղավորիկ կանաչ հովն էր բույրեր ճոճում:

Արևելյան երկնքի տակ, ծփանքի մեջ առավոտի, գույն էր ծաղկում վառ ու մաքուր: Գույն էր գալիս կարմիր ու մեծ, որ անցնելով խոտի միջով, որ անցնելով սարի միջով, քարի, հողի, ծաղկի միջով՝ տեսքն ու տեղը առներ դաշտի և լույս դառնար առավոտի: Դաշտի եզրին, ուր հասնում էր լույսը թրթռուն, ցոլաց դողդոջ ցողը պաղուկ, ու գույն անցավ խայտաբղետ: Բարձր, կարմիր ու վառվըռուն գույն ցոլաց լուռ, ալացիկ, բարի լույս անցավ դաշտի վրայով, և բաց շարժվում էին գույները փափուկ, շարժվում, բարձրանում էին առավոտի դեմ:

— Հիմա զարթնե՞ց Փոքրիկ Տղան,— ցած շշնջաց, վառ գույն տվեց կակաչը կարմիր՝ ցածրիկ ցողուն, բարակ թերթիկ:

Անհամբեր ձայնը անցավ բաց դաշտին, պաղ ցողը դողաց լույսի մեջ խաղաղ ու ցոլքեր տվեց խոր, բազմապատիկ:

— Հիմա զարթնե՞ց Փոքրիկ Տղան,— ձայնը առավ ու դողդողաց շուշանը ճերմակ, թերթիկը տխուր:

— Այսօր կգա, փոքրիկ կակաչ, տես լույսն է բարի, երկինքը դողդոջ,— ծաղիկը բացեց, կապույտ գույն առավ լուռ մանուշակը՝ ականջը պահած հողի ձայներին:— Երկինքը մեր լուռ պատկերն է առել ու որոնում է Փոքրիկ Տղային:

— Կտեսնի՞, ասա, Փոքրիկ Տղան մեր լուռ պատկերը երկնքի կրծքին:

— Ախ, երկար է ճանապարհը, ոլորմոլոր ու անհայտ,— բաց լույսը առավ, ձայները առավ ու իր դեղինից ոսկեգույն խառնեց զանգակածաղիկը բարձր ու ճոճուն:

—Ծի՛վ-ծի՛վ եկա, ծի՛վ-ծի՛վ տեսա, ուրախացա, ծի՛վ-ծի՛վ-ծի՛վ,— սարալանջի իր բնից արագ դուրս թռավ, ուրախ ճըտճըտաց արտույտը չալտիկ:

Ասաց.

— Ես արագ գնամ, պտտվեմ ու գամ ու լուրեր բերեմ ձեզ տեսակ-տեսակ:

— Արտույտ զվարթ, արտույտ չալտիկ, իմ կարմիր գույնը ամբողջ տվեցի, ու թուլացնել եմ թերթերս բացված,—ցած շը-



շընչաց, վառ գույն տվեց կակաչը կարմիր, սրտիկը սևուկ.— ասա, ախ, ասա՝ մայրամուտի հետ էլ գույն չի մնա, թերթերս կիջնեն խոնարհ խոտերին:

Արտույտը թռավ բարձր հովի հետ, ու խոտը ծալ-ծալ ծփաց խաղաղիկ:

— Է-հե՜յ, եկա, ծարավներ, Է-հե՜յ, եկա, նախշուններ, եկա ջուր տամ ձեզ քաղցրիկ, առավոտի լույս բարի,— կողքերից զնգաց, ցողունների տակ փայլեց-փայլփլեց ջրիկը ուրախ, առվակը փոքրիկ:

Ծաղիկների փակ ցողուններով լուռ ծարավն անցավ, և արթուն շարժվեցին, շուրթեր բացեցին մութ արմատները խորրունկ հողի տակ:

Պաղ ջրիկ առավ, ամուր գույն տըվեց կակաչը կարմիր, սրտիկը սևուկ. պաղ ջրիկ առավ, պաղից սրսփաց շուշանը ճերմակ, թերթիկը տխուր. պաղ ջրիկ առավ, հողից լուր տվեց լուռ մանուշակը՝ ականջը պահած հողի ձայներին. պաղ ջրիկ առավ ու իր դեղինից ոսկեգույն տվեց զանգակածաղիկը բարձր ու անհամբեր:

— Բարձրիկ սարի կատարից ես իջել եմ ձեզ համար, ասեք՝ ի՞նչ լուր տանեմ ցած,— ասաց, զնգզնգաց, ցողունների տակ փայլեց-փայլփլեց ջրիկը ուրախ, առվակը փոքրիկ:

— Փոքրիկ առվակ, ջրիկն ուրախ, իմ կարմիր գույնը ամբողջ տվեցի, ու թռուլացել են թերթերս բացված,— ու շշնչաց, վառ գույն տվեց կակաչը կարմիր՝ ցածրիկ ցողուն, բարակ թերթիկ.— ասա, ախ, ասա Փոքրիկ Տղային՝ մայրամուտի հետ է՛լ գույն չի մնա, թերթերս կիջնեն քո պաղ ջրերին:

Առվակն անցավ դաշտի միջով, ջրիկ տվեց ծաղիկներն ու զրնգաց դեպի առաջ: Հովը ելավ ժայռի տակից, զարկեց-անցավ դաշտի միջով, ծաղիկների բուրմունք տարավ: Արևն հասավ դաշտի գլխին, ծաղիկներին շոյեց-փայեց ու զրնգուն յոթ գույն առավ: Ամպը իջավ դաշտի վրա, ծաղիկներին ստվեր տվեց, որ ամրանան թերթիկները, որ խտանան բուրմունքները ու հավաքվեն վառ գույները:

Դաշտից հեռու, անհայտ հեռու զարնան ծաղիկ օրն էր հոգնում:

Առվակի կողքին տունն էր դռնբաց՝ պատերը՝ թեթև, տանիքը՝ կարմիր: Կարմիր տանիքին եկել-խառնվել, հին, բարձրիկ բարդու ձիգ տերևներն էին անվերջ ու խաղաղ խշշում-խշխշում: Գառնուկի համար Տղան խոտ բերել, գառնուկի կողքին, առվի ջրերում վառվռուն փայլող փոքրիկ քարերն էր դիտում ու հսկում, որ կարողանա մինչև վերջ տեսնել ցոլքը ջրերի: Քարերի վրա ջուրը բարձրանում, հայելու նման էր դեպի դռնբաց կարմիր տանիքով տունը շըրջվում: Նույն կերպով բացվող, նույն կարկաչ տվող ցոլքի ձիգ լանջին տունը, մեծ բարդին, ճերմակ գառնուկը ու Փոքրիկ Տղան կարճ պատկեր տալիս, ծալ-ծալ օրորվում և ջրին անցած գլորվում էին:

Իրիկնապահի անձրևից առաջ ահա նո՛ր հասավ գույնը կակաչի.

— Փոքրիկ առվակ, ջրիկն ուրախ, իմ կարմիր գույնը ամբողջ տվեցի, ու թռլացել են թերթերս բացված,— ցոլքի լանջին ցոլաց-երերաց ծաղիկների հեռու դաշտի լուրը արագ:

Իրիկնապահի անձրևից առաջ ահա նո՛ր հասավ ձայնը կակաչի.

— Արտույտ զվարթ, արտույտ չալտիկ, ասա, ախ, ասա՝ մայրամուտի հետ էլ գույն չի մնա, թերթերս կիջնեն խոնարհ խոտերին,— երկնքից զնգաց, փաթիլի նման սպիտակ-տխուր իջավ, ցած իջավ ծիվ-ծիվն արտույտի, ու ձայների մեջ ցոլաց-երերաց ծաղիկների հեռու դաշտի լուրը կապույտ:

Երկնքի կրծքին փայլեց ու անցավ զարկող պատկերը վառ ծաղիկների, և իրիկ-

Նկարը՝ ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



նապաճի կարմիր ամպերին անձրևի խոնավ լռություն հասավ:

— Թռնն եկավ կաթ-կաթ, իր տուն մըտավ ամեն մարդ, Արևն անցավ սարի ետև, Կանաչ խոտը նայեց վերև,— գարնան դաշտերից զիլ-զիլ կանչերով, անձրևի բույրը կրծքերին առած, անձրևի կաթիլ կոպերին առած՝ տուն հավաքվեցին կանաչ աղջիկներ՝ ծամերը ոսկի:

Անձրևն իջավ կարմիր, արագ, և ծածանվեց ամպը հեռու, սև ամպի տակ՝ արեգակ: Արևմուտքին ստվեր տվեց խոր ու անշարժ, արևելքին՝ յոթ զիլ գույնով ծիածան: Կաթիլը ցոլաց փայլուն տերևին և ծիածանի յոթ գույնն ուներ ու խոր ստվերն արևմուտքի:

— Դու որտեղի՞ց եկար գույնիկ, գույնիկ պայծառ ու կարմրիկ,

— Դու որտեղի՞ց եկար գույնիկ, գույնիկ զվարթ ու կանաչիկ,

— Դու որտեղի՞ց եկար գույնիկ, գույնիկ լռիկ, վառ ծիրանի,

— Դու որտեղի՞ց եկար գույնիկ, գույնիկ դեղին ու նարնջի,

— Դու որտեղի՞ց եկար գույնիկ, գույնիկ խոնարհ, լուռ կապույտի,— ասաց տղան հատիկ-հատիկ՝ գարնան ձայնով զիլ ու զվարթ:

Բայց ժամն էր անցյալ, և օրը հասուն: Արեգակն էր խոր ընկղմվում ստվերի տակ արևմտյան, ամպն էր իջնում ու ծավալվում լուռ մթան մեջ երեկոյի:

— Ինձ հետդ տար, գույնիկ պայծառ ու կարմրիկ, ինձ հետդ տար, գույնիկ խոնարհ, լուռ կապույտի,— ասաց, վազեց Փոքրիկ Տղան:

Ասաց, վազեց Փոքրիկ Տղան, ու անհայտ էր առավոտը, ախ, լուռ պատկեր երկնքի կրծքին:

Եվ եղավ գիշեր խաղաղ ու թաց, և քուն մտավ Փոքրիկ Տղան: Տանիքի կարմրին անձրև խշխշաց երկար ու անվերջ, բարդու տերևին անձրև խշխշաց երկար ու անվերջ, ու կապույտ լուսնից պաղուկ փայլփլեց առվակը հստակ, արծաթ անշարժիկ: Լուռ քնի միջով մաքուր, վառվռուն բացվեց պատկերը դողդոջ ու հեռու՝ անձայն, միայնակ, խոսքերով տեսիլք.— այնտեղ խաղաղ, այնտեղ զըվարթ առավոտ է ծփում կարմիր: Այնտեղ ցոլուն ու դողդոջուն ցողն է փայլում գունզգունիկ: Այնտեղ բացվում ու դանդաղիկ ծաղկաթերթն է գույներ առնում: Այնտեղ պայծառ, մենավորիկ կանաչ հովն է բույրեր նոճում:





ՌԱԶՄԻԿ ԴԱՎՈՅԱՆ

# Մարիամ ճնճղուկը

**Ապրում էր ծառի վրա,**
**նստում էր լույսի շողին,**
**երգելով սիրտ էր բերում**
**իր սիրտը կորցընողին:**

**Ուտում էր մի փշուր հաց,**
**ուրախ էր մանկան նման.—**
**նինջի մեջ՝ աչքերը բաց,**
**երկնքի լուրթը վրան:**

**Չտեսա երբեք տխուր,**
**թևերը ներքև կախած.—**
**գնում էր, չէր ասում՝ ո՞ւր,**
**շուտ ետ էր գալիս փախած:**

**Խոսում էր երկար-բարակ,**
**պատմում էր ճլվլալով.—**
**աղմուկ էր մի խայտառակ,**
**ափեափ լցված բարով:**

**Ապրեցինք այդպես երկար**
**մի ամառ ու մի աշուն՝**
**պարտեզում ծաղկանկար,**
**թփերում նախշուն-նախշուն:**

**Եվ մի օր, ցուրտ մի գիշեր,**
**երբ լույսը բացվեց կրկին,**
**ուզեցի սիրտս բուժել՝**
**գգվելով նրա երգին:**

**Ելա որ՝ աշխարհն ամբողջ**
**սառցեղեն քող էր կապած.—**
**... ձյունեղեն պատանքի մեջ**
**ընած էր՝ թևերը բաց:**



Նկարը՝ ՍԱՐԳԻՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

## Զրույց

Կապույտ ծաղիկն
Ասաց կապույտ բառերով.
— Հասկանում եմ
Երկնի լեզուն դարերով:

Դեղին ծաղիկն
Ասաց դեղին բառերով.
— Ես խոսում եմ
Արեգակի բարբառով:

Մեղուն եկավ,
Ասաց,— ես եմ, ծաղիկներ,
Ամուր կապում
Երկինք-գետին, վար ու վեր:

Հետո ասաց.
— Ձեր զրույցից քաղցրաբառ
Պիտի քամեմ
Խորհուրդ ու միտք ու նեկտար:

## Դաշտում

Ամեն ծաղիկ
Մյուս ծաղկին
Բույրն է տալիս
Իր թանկագին:

Բույր են տալիս,
Բույր են առնում,
Գույն են տալիս,
Գույն են առնում:

Դաշտը ասես
Լինի շուկա,
Որտեղ ոչ մի
Վաճառող չկա:

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

## Կրակն ու ջուրը

Կրակն ու ջուրը
Շատ հին ժամանակ
Քույր-եղբայր էին
Մի հաշտ հարկի տակ:
Բայց քույր ու եղբայր
Վիճում են մի օր,
Թե ով է արդյոք
Իրենցից հզոր:
Ու քույր կրակը
Բարկանում է շատ՝
Կրակ է տալիս
Սարի խոտ ու դաշտ:
Եղբայր ջուրն հագիվ
Կրակն է մարում...
Ու այդ օրվանից
Բաժան են ապրում:

Բայց ինչ էլ լինի՝
Քույր են ու եղբայր,
Պապական կանչով
Կապված են իրար:
Երբ եղբայր ջուրն է
Սառնամանիքին,
Ձմռանը սառչում,
Քույրը ասում է.
— Տաքացի՛ր եղբայր,
Ջուր ես ամաչում:
Երբ քույր կրակը
Կիզիչ ամռանը
Խոցվում է բոցում,
Եղբայրն ասում է.
— Խմի՛ր, քույրիկ ջան,
Սիրտդ հովացրու:

# Աշտարակ. գեղարվեստի դպրոց

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ





### ԱՄԱՌ ԷՐ.

Դիմացի պատից կախ տված գիպսե կիսանդրին մութ խոռոչներ հիշեցնող պաղ աչքերով նայում էր: Տղան խուսափում էր այդ անկենդան, անարյուն հայացքից և նկարում էր առանց նայելու: Կարծես թե վերջացրեց, բայց նա տեսնում էր, որ իր նկարածի մեջ համաչափությունը լիովին խախտված է. քիթը մեծ է ստացվել, աչքերը իրարից շատ են հեռու, իսկ ծնոտը կախ է ընկել, կարծես ջարդված լինի:

Տղան, որ նկարակալի առաջ վիզը ծըռել, իր գործից դժգոհ մարդու նեղսրտությամբ մատիտն էր պտտեցնում մատների արանքում ու մերթընդմերթ տխրությամբ, աչքի ծայրով նայում այդ «ծաղրանկարին», անհանգիստ շարժվեց տեղում և ուզեց վեր կենալ:

— Նորից սկսիր:

Վարդանը ետ նայեց: Միայն աչքերով ժպտացող ուսուցիչը թմփթմփացրեց ուսին և հեռացավ: Տղան ռետինը ձեռքն առավ, և քիչ հետո գծանկարից ոչինչ չմնաց: Անշարժ ու անկամ նստել էր ճերմակ թղթի առաջ: Հիշողությամբ նըկարելը դժվար է, բայց նրա կիսափակ աչքերը ամռան օր էին տեսնում և այդ շողուն օրվա մեջ՝ վետվետացող, տաք ու պայծառ գույներ: Նա զգում, հստակ տեսնում էր, թե կեսօրվա բարկ արևի դեղին, ոսկեղենիկ լույսն ինչպես է խուրձ-խուրձ թափվում խոտերին ու քարերին, թե փոքրիկ գառներն ինչպես են շոգից իրար պոչ-պոչի կպած, հրմշտոցով վազում զառիթափն ի վար և պատսպարվում թթենու սաղարթների տակ: Գառների ետևից եկող փոքրիկ տղան նույնպես վազում է ներքև, նստում հենց գառների մոտ և ուսից իջեցնում նախշուն հացաշորը:

Նկարակալին հակված տղան սթափվում է: Քիչ առաջ նա տեսավ ամեն ինչ այնպես վառ ու կենդանի, ինչպես այն օրն էր, երբ ամառը թվում էր անվերջանալի, իսկ ինքը գառնարած էր:

Նա ուղղվեց և վստահորեն մատիտը մոտեցրեց թղթին:

### ՆՈՐԻՑ ՊՏՏՎՈՒՄ Է ԲՐՈՒՏԻ ԱՆԻՎԸ.

Խեցեգործությունը անհիշելի ժամանակներից եկել հասել է մեզ: Գեղարվեստի այս դպրոցում այսօր գործնական պարապմունք է: Երեխաները տեսականորեն պատրաստ են, իսկ հիմա յուրաքանչյուրն ուզում է իր փոքրիկ ափով կավ հունցել, ձև ու շունչ տալ նրան:

Սենյակը լիքն է երեխաներով: Ծեր

բրուտը, որին հրավիրել են դպրոց, երեխաներին իր շուրջը հավաքած, ցույց է տալիս, բացատրում մի շարք գաղտնիքներ:

Ահա վարպետը մածուցիկ կավը հրըկում է ափով ու պտտում անիվը: Տձև զանգվածը աստիճանաբար որոշակի տեսք է ստանում: Բրուտը թրջում է մատները: Նրա կոշտ ափի տակ ճկուն ու դյուրաթեք կավը քիչ անց դառնում է սափոր՝ երկարավիզ, ողորկ ու դրվագված: Սափոր սարքելը հանկարծ դյուրին է թվում, և աշակերտները ոգևորված ուզում են իրենք փորձել: Վարպետը բազմանշանակ ժպտում է քթի տակ: Իհարկե, միանգամից չի ստացվի, նույնիսկ ձանձրալի կթվա, բայց շատերը, սիրելով այս գործը, իսկական վարպետներ կըդառնան, սափորներ, գունավոր ու նախշազարդ կավե խեցիներ կպատրաստեն: Դեռ թրծելու վառարան չունեն, բայց ընկ. Թովմասյանը խոստացել է այս տարի գործը գլուխ բերել: Իսկ երեխաները պարապ չեն նստում, ծեր վարպետի հետ շաղում են կավն ու նորից պտտում բրուտի անիվը:





## ԱՐՏՈՒՅՏՆ ԻՋՆՈՒՄ Է ԱՄՊԵՐԻՑ

Փոքրիկ դազգահ է, ու մի փոքրիկ ջուլհակուհի: Կարմիր, դեղին, կանաչ թելերն իրար են հյուսվել, դարձել գույների խաղ, հուզիչ քնապատկեր: Թեման կենցաղային է. գյուղական հնձան:

Ոտքերի տակ ճմլվող ոսկեգույն խաղողի կենարար հյութը քար-հնձանից ծորում է տակառի մեջ: Զույգ կանայք՝ նախշավոր գոգնոցներով, մի պահ դադարեցրել են աշխատանքը և տարվել աշխույժ զրույցով: Անդադար ծորացող հյութով ափեափ լցվել է տակառը, և հյութը շիթ-շիթ ծորում է վար:

Այս փոքրիկ ջուլհակուհին, որ այսպես նրբորեն հյուսում ու գործում է գորգը, դպրոցի սաներից է: Հիմա, այս պահին, երբ միտքը գույն է դառնում, իսկ գույնը՝ կյանք, նա իրեն նմանեցնում է «Անահիտ» հեքիաթի հերոուհուն: Հետո, երբ կվարժվի և ավելի կվարպետանա իր գործի մեջ, ուրիշ նախշուն, ծաղկազարդ գորգեր կգործի: Մանրիկ մատներով ու կապույտ թելով երկինք կհյուսի, և այդ երկնքում կլողան քուլա-քուլա ճերմակ ամպեր, և ամպերում ոսկեփետուր մի արտուտիկ ուրախաձայն կդայլայլի գարնան մասին: Եվ ապա երկնքի անհունից կիջնի արտույտը՝ աստղիկներ առած իր թևիկներին, որպես լույսե մի երազանք: Անկաշկանդ արտույտի քաղցրահնչյուն երգին, ինքը՝ արդեն հմուտ ջուլհակուհի, այդ երազանքը կդարձնի իրեղեն պատկեր՝ կենսախինդ, թրթռուն ու ծաղկուն գույներով միահյուս:

Աշտարակի գեղարվեստի դպրոցի միջանցքը ծաղկավետ մարգագետին է հիշեցնում: Հյուսկեն, ծոփքավոր ու գունազարդ այս «խուրջին-պայուսակները», որ կախված են դիմացի պատից, կոչվում են «Տարվա չորս եղանակները»: Վառվռուն կարպետներ, մարդակերպ, նախշազարդ խեցիներ, գունագեղ, նրբահյուս գործեր, նկարներ: Այս ամենը դպրոցի

սաների աշխատանքն է: Կուլտուրայի մինիստրության աջակցությամբ ամեն տարի կազմակերպվում են հանրապետական մրցույթ-ցուցահանդեսներ, որոնց մասնակցում է դպրոցի աշակերտների զգալի մասը:

— Այդ ցուցահանդեսները ինքնավստահություն են ներշնչում երեխաներին,— ասում է նկարիչ Անդրանիկ Մխիթարյանը:

Եվ իրոք, ցուցահանդեսներին մասնակցելու համար դպրոցի սաները լրջորեն ու նվիրվածությամբ են աշխատում: Դպրոցի պարապմունքները սկսվում են ժամը 3-ին: Աշակերտները գալիս են շրջանի գյուղերից: Գալիս են տան մեծերից լսած հեքիաթների ու զարմանահրաշ պատմությունների միջով, արդեն իրենց մեջ ապրող արդար և ազնիվ հերոսներին գույն ու կերպ, ձև ու մարմին տալու:

— Նրանք հնարավորություն ունեն նկարել կամ քանդակել ազատ, անկաշկանդ,— ասում է Արմեն Պողոսյանը:— Ոմանք այնքան հստակ ու պարզ են տեսնում իրենց հետաքրքրող նյութը, որ մեզ ուղղելու շատ քիչ բան է մնում:

Այսօր դպրոցն աշխատում է երկու հերթափոխով: Բայց դա չի խանգարում նկարիչ-մանկավարժներ Սարգիս Թովմասյանին, Անդրանիկ Մխիթարյանին և Արմեն Պողոսյանին, որպեսզի իրենց գիտելիքներով օգնեն ու քաջալերեն յուրաքանչյուր դպրոցականի: Նրանք աշխատում են յուրաքանչյուրի մեջ տեսնել այն գեղեցիկն ու լավը, որն անհրաժեշտ է արվեստագետ դառնալու, արվեստին նվիրվելու համար:

— Ովքեր էլ ուսման ընթացքում չեն կարողանում գտնել իրենց, ուսումնառության այդ չորս տարիները կորուստ չեն, որովհետև նրանք դառնում են արվեստի իսկական սիրահարներ,— ասում է դպրոցի տնօրեն Սարգիս Թովմասյանը: Դպրոցն ավարտած շատ տղաներ ու աղջիկներ այսօր սովորում են Սովետական Միության տարբեր գեղարվեստի ուսումնարաններում և բարձրագույն հաստատություններում:

Աշտարակի գեղարվեստի դպրոցի հեղինակությունը շրջանում օրեցօր աճում է, և այստեղ արվեստը ճանաչելու, սիրելու, սովորելու են գալիս ավելի ու ավելի շատ պատանիներ և աղջիկներ:

Գ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

*Լրանում էր տասնհինգ տարիս: Անվերջ հյուրեր, շնորհավորանքներ: Անչափ ուրախ էի: Նորից դռան զանգ: Այս անգամ արդեն հարևանի տղան էր՝ ձեռքին վանդակված մի թռչնակ: Փոքրիկ եղբայրս ցնծության մեջ էր. վերջապես ինքն էլ թռչնակ ունեցավ: Իսկ իմ տրամադրությունը միանգամից ընկավ. թռչնակը շատ տխուր էր, կծկված: Փորձեցի աշխուժացնել, բայց իզուր: Ամբողջ երեկոյի ընթացքում մտածում էի փոքրիկ թռչնակի մասին ու ցանկանում շուտ ազատվել հյուրերի առաձգական ուրախությունից, մենակ մնալ փոքրիկ թևավորի հետ: Իմ անթիվ հարցերից ոչ մեկին նա չպատասխանեց: Գոնե շուտ քնեին մերոնք, հատկապես՝ փոքրիկ եղբայրս...*

*Կեսգիշերին անաղմուկ մոտեցա վանդակին: Թռչնակն էլ էր արթուն: Շատ էր վիրավորված: Բաց թողնելուց առաջ ներողություն խնդրեցի նրանից՝ հարևանի տղայի, փոքրիկ եղբորս և իմ անունից: Չգիտեմ՝ հասկացա՞վ իմ լեզուն: Այնուամենայնիվ, ես, գոհ իմ արածից, քնեցի: (Նրանի փոքրիկ թռչնակն իմանա, թե ինչքան եմ կարոտում իրեն): Երևի իմ մեջ չծնվեր նրա մասին գրելու միտքը, եթե տեսած չլիներ, թե դեպի բաց երկինք թռչելիս անգամ նա որքան տխուր էր...*

*Երբ թռչնակն արթնացավ, նորից վանդակի ճաղերն էին ու անկյունում դրված կերակրամանը: Հետո հիշեց քիչ առաջ տեսած երազը, տխրեց. շուրջը ոչինչ չէր փոխվել: Մոտեցավ վանդակի դռնակին: Դրսում արև էր, տաք, ուրիշ թռչնակներն ուրախ էին, ազատ, խաղում էին բաց երկնքում: Նորից սուր ցավով զգաց վանդակի ճաղերի ներկայությունն ու ավելի տխրեց: Որոշեց այլևս չմոտենալ ճաղերին:*

*Վանդակում մի փոքրիկ, փայտե ճոճանակ կար, որի վրա թռչնակը երբեմն օրորվում էր ու երազում: Հիմա տրամադրություն չուներ ո՛չ օրորվելու, ո՛չ երազելու: Մոտեցավ կերակրամանին: Դատարկ էր: «Ուր որ է կգա Ձեռքը»,— մտածեց թռչնակը: Բայց Ձեռքն ուշանում էր, և թռչնակն ուրիշ ոչինչ չուներ անելու. մնում էր միայն տխրել ու սպասել...*

*Թռչնակը փորձեց հիշել, թե ուրիշ էլ ինչ էր անում մնացած բոլոր օրերին... Կարծես թե այլ զբաղմունք չէր եղել... Նա սթափվեց դռնակի չխկոցից: Ձեռքն էր եկել: Բացվեց փականքը. ցորենի հատիկներ լցվեցին կերակրամանի մեջ. մյուս փոքրիկ ամանի մեջ մի բուռ ջուր*

ԱՐՄԻՆԵ ՄԵԽԱԿՅԱՆ

# Թռչնակը

Նկարը՝ ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ



ալեկոծվեց խռովահույզ և անմիջապես հանդարտվեց։ Հետո Ձեռքը նորից կողպեց փականքն ու գնաց...

Այնքան մեծ էր Ձեռքը, այնքան վստահ իր ուժին, որ միշտ սարսափով էր համակում Թռչնակին, թեև վնաս չէր պատճառում. միայն հատիկ էր տալիս, ջուր, բացում ու փակում էր դռնակը, երբեմն էլ նույնիսկ փորձում փաղաքշել իր գերուն։

Ամեն անգամ, երբ Ձեռքը հեռանում էր, Թռչնակը տարտամ ու տագնապալի հույսով մոտենում էր վանդակի դռնակին, հրում, նորից ու նորից համոզվում, որ դռնակը երբեք բաց չի մնում։ Միայն երազում էր բաց լինում։ Միայն երազում էր տեսնում Թռչնակը, թե ինչպես է ինքը բաց երկնքում ճախրում, իրեն ծանոթ այն ուրախ թռչնակների հետ, որոնց միշտ տեսնում էր վանդակի ճաղերի ետևից։ Եվ ինքն էլ էր բոլորի նման ազատ լինում, երազում, ուզածի պես խաղում ու թռչկոտում, ուզածի չափ բարձրանում դեպի լուսավոր կապույտը, հետո իջնում կանաչ ճյուղերին, երգում, երգում խելակորույս ցնծությամբ։ Բայց ամեն անգամ երազն անսպասելիորեն, ամենաբերկրալի պահին ընդհատվում էր, և Թռչնակը կրկին իրեն տեսնում էր վանդակում, անսասան ճաղերով շրջապատված։

«Երևի թռչելն էլ եմ արդեն մոռացել»,— ամեն անգամ տխուր մտածում էր նա և որոշում, որ երբ նորից հայտնվի ցանկալի երազը, անպայման կթռչի դեպի Արևը, այլևս ցած չի իջնի, որ հանկարծ նորից չընդհատվի ազատ ճախրի բերկրանքը...

Թռչնակն արդեն չէր էլ հիշում, թե երբվանից է վանդակում։ Ինչքան իրեն էր հիշում, այդքան էլ՝ վանդակն ու Ձեռքը։ Եվ մտածում էր, որ նրանք միշտ իր հետ են լինելու ու հիմա իրեն չէր էլ պատկերացնում առանց նրանց...

Թռչնակն ուտել չէր ուզում, բայց նորից մոտեցավ կերակրամանին. ուրիշ անելիք չուներ։ «Հա, մոռացա, այսօր դեռ չեմ երազել»,— մտածեց նա, զգալով, որ խիստ ձանձրացել է անվերջ նույն բաներն անելուց. կուտ, ջուր, ճոճանակ, խաբեբա երազներ։ Ձանձրացել էր նաև ան-

վերջ ձանձրանալուց։ Փորձեց հիշել այսօրվա երազը, բայց անդարձ կորցրել էր այն։ «Ինչ վատ է,— մտածեց նա,— գոնե կարողանայի գտնել անցած երազը»։ Բայց չփնտրեց այլևս, որովհետև այդ երազն էլ էր լինելու բաց երկնքի մասին, Արևի մասին, իսկ վերջը կրկին ցավոտ ընդհատումն էր լինելու, կրկին մտնելու էր անսասան ճաղերով վանդակը... Այդ մտքերի մեջ էլ հոգնեց Թռչնակը և քնեց վանդակի անկյունում...

... Շուրջը անծայրածիր, լուսավոր կապույտ էր՝ երկինք։ Արևը ժպտում էր վերևում ու կանչում։ Թռչում էր Թռչնակը, թռչում՝ արագ-արագ թափահարելով թևիկները, ցանկանում էր ավելի շատ վայելել երկնային անսահմանությունը, որտեղ խանգարող, կաշկանդող ճաղեր ու Ջերք չկային։ Սլանում էր վեր, միայն դեպի վեր, իր ետևից կանչելով ցածր կանաչ սաղարթներում թռչկոտող թռչնակներին։ Եվ հանկարծ մի կոշտ բան ծանր հարվածեց նրա թևիկին։ Երկնային անսահմանությունը ցնդեց, ճախրը ընդհատվեց. հեւհեւ թպրտացող Թռչնակը ուժասպառ ընկավ վանդակի անկյունում...

Երկար մնաց այդպես թևաթափ ու սրտակտոր ընկած, չհավատալով, թե այս անգամվա ճախրն էլ էր երազ, խաբկանք, թե հիմա նորից վանդակում է, թե հիմա նորից կգա Ջերքը, հետո նորից...

Լաց էր լինում Թռչնակը։ Այլևս չէր հավատում երազներին, որ միշտ խաբում էին ու ավելի վշտացնում, այլևս չէր ուզում մտածել, ննջել, երազ տեսնել։ Կծկվեց վանդակի անկյունում։ Մրսում էր, դողում։ Վանդակը դրված էր պատշգամբում, բաց լուսամուտի մոտ, այնքան մոտիկ, որ եթե դռնակը մի հրաշքով բացվեր, միանգամից կհայտնվեր դրսում։ Կծկվեց ու սեղմվեց անկյունում շաղ տրված խոտի փնջին, որից անձրևի բույր էր գալիս։ Փակեց աչքերը, բայց և իսկույն բաց արեց, վախենալով խաբեբա երազից։ Սպասեց Ջերքի գալուն։ Կուտ ու ջրի ժամն էր, իսկ Ջերքը չկար ու չկար։ Թռչնակն սկսեց հաշվել վանդակի ճաղերը, հետո նորից հաշվեց՝ ժամանակ սպանելու համար ու հանկարծ... Թռչնակը վախից ավելի սեղմվեց վանդակի անկյունում, դռնակը բաց էր։ «Իսկ ո՞ւր է Ջերքը,— մտածեց նա։— Երևի կեր է տալու, հենց հիմա կհայտնվի ու հատիկներ կլցնի կերակրամանի մեջ, նորից կփակի դռնակը և կհեռանա»։ Սպասեց տագնապահար Թռչնակը, սպասեց, իսկ Ջերքը չէր երևում։ «Միգուցե նորից երա՞զ է»։

Թռչնակը չէր ուզում դուրս գալ վանդակից. վախենում էր մեծ անորոշությունից։ Ավելի լավ է մնա այստեղ. արդեն սովորում է վանդակին։ Որքան ավելի էր Թռչնակը ստիպում իրեն չմտածել բաց դռնակի մասին, այնքան ավելի էր նրա ներսում ուժգնանում անորոշ տեսիլքը փորձելու ցանկությունը։ Եվ հուշիկ, տագնապից նվաղող սրտով մոտեցավ բաց դռնակին, տոտիկը զգուշորեն դուրս դրեց ու թևին տվեց...

Ամեն ինչ կարծես ծանոթ երազի շարունակությունը լիներ. նույն կանաչ աշխարհը, նույն թռչնակներն ու անսահման կապույտը վերևում։ Բայց կար նաև նոր, անսովոր մի բան. դա նորեկ անձրևի բույրն էր, որ զգացել էր նաև վանդակում գցված խոտի փնջիկից։ Սավառնում էր Թռչնակը, սիրտը ցնծում էր բերկրանքից, և այլևս տագնապ չկար այդ ցնծության մեջ։ Վախ չկար վանդակի ու Ջերքի հանդեպ։ Եվ Թռչնակը սիրտ արեց նույնիսկ ետ գնալ. վերադարձավ լքած վանդակի մոտ, դրսից հպվեց ճաղերին. խղճում էր վանդակին ու Ջերքին, ցանկանում էր նրանց էլ տանել իր հետ դեպի անսահման, անկաշկանդ կապույտը երկնային, բայց ծանր էր վանդակը, իսկ Ջերքը չէր երևում։ Ու նորից զարմանք ու կասկած հայտնվեց սրտում. մի՞թե իրոք երազ չէ այս ճախրը, երկնային արևոտ անսահմանությունը։

Շարունակում էր ճախրել Թռչնակը, նետվում էր վեր ու վար, իջնում կանաչ ճյուղերին, խառնվում մյուս թռչնակների խաղին, և չէր ընդհատվում այդ երազը։ Միգուցե պարզապես անսովոր երկար է այս ճախրը, բայց դարձյալ երազ է, խաբկանք։ Սրտապատառ արագությամբ դեպի երկնային կապույտի խորքերն էր սլանում Թռչնակը, ավելի ու ավելի տագնապելով, թե հիմա վանդակի անսասան ճաղերը նորից ծանրորեն կհարվածեն իր թևիկներին, հեւացող կրծքին, կխլեն այս երջանիկ տեսիլքը, այս անկաշկանդ ճախրանքը, կապույտ երկնքի այս արևոտ անսահմանությունը...

Եվ այդ տագնապին այլևս չդիմացավ փոքրիկ Թռչնակը. պայթեց ազատ ճախրի բերկրանքից ուժգին բաբախող սիրտը, պայթեց այն սարսափազդու մտքից, որ ա՛յս թռիչքն էլ է խաբկանք, սա՛ էլ է երազ...

ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԷՋ

# Ալեքսանդր Պուշկին
1799—1837



## Հուշարձան

Թարգմ. ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆԸ

**Ես ինձ համար կանգնեցըրի արձան անձեռակերտ,**
**Չի խափանվի դեպ այն եկող ժողովրդի ճամփան,**
**Անհնազանդ գլխով նա խոյացավ ավելի վեստ,**
**Քան հուշասյունն Ալեքսանդրյան:**

**Օ ոչ, ես չեմ մեռնի—հոգիս նվիրական երգով**
**Իմ աճյունից երկար կապրի և կմնա անեղծ—**
**Եվ կլինեմ ես փառապանծ, որքան լուսնի ներքո**
**Կապրի թեկուզ մի բանաստեղծ:**

**Իմ համբավն համայն մեծ Ռուսիայում կտարածվի,**
**Ինձ կհիշի այնտեղ ապրող ամեն լեզու և ազգ,**
**Սլավոնի թոռը սեգ, ու ֆինն, ու դեռ այսօր վայրի**
**Տունգուզը, և կալմիկն ստեպաբնակ:**

**Եվ ես նրա համար կապրեմ ժողովրդի սրտում,**
**Որ իմ քնարը արթնացրել է զգացմունքներ բարի,**
**Եվ իմ դաժան դարում երգել եմ ես ազատություն**
**Եվ գութ հանուն ընկածների:**

**Օ իմ մուսա՛, մենք երկնքի հրամանի՛ն անսանք,**
**Չսարսելով հալածանքից, չձգտելով փառքի,**
**Դու անտարբե՛ր լսիր գրպարտություն ու գովասանք,**
**Եվ հիմարին մի՛ առարկի:**



# ԶՐՈՒՅՑՆԵՐ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

ԶՐՈՒՅՑ ՔՍԱՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

**ՌԱՖԱՅԵԼ ԻՇԽԱՆՅԱՆ**

բանասիրական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

## Պարսից Աքեմենյան կայսրության խորտակումը և Հայքի անկախությունը

Դարեհ Առաջին թագավորի ժամանակ և դրանից հետո, Պարսից Աքեմենյան կայսրությունը աշխարհի ամենամեծ ու ամենահզոր պետությունն էր: Պարսիկները հաղթեցին իրենց բոլոր մեծ ու փոքր թշնամիներին, և թվում էին անհաղթ: Սակայն ամենահզոր աշխարհակալ պետություններն էլ վերջիվերջո պարտվել են, և ասպարեզ են եկել ուրիշ հզոր պետություններ: Պարսիկների անսասան թվացող լայնածավալ պետության պարտությունը պիտի գար արևմուտքից՝ փոքր Հունաստանից:

Իսկ Հայաստանը Պարսից Աքեմենյան պետության կազմում պատվավոր տեղ ուներ: Հայքի սատրապ-թագավորները հայեր էին, և ազգակցական կապերի մեջ էին պարսից արքունիքի հետ ու մեծ պատիվ ունեին այնտեղ: Հայկական զորքը կարևոր դեր ուներ պարսկական զորաբանակների կազմում:

Մ. թ. ա. 500 թ. Աքեմենյան Պարսկաստանը պատերազմ սկսեց հույների դեմ: Բալկանյան թերակղզու մի մասը՝ Թեսալիան, պարսիկները գրավել էին, բայց ուզում էին գրավել ամբողջ թերակղզին, որի հարավային մասում Հունաստանն էր:

Աքեմենյան զորքերը մոտեցան Հունաստանի Աթենք քաղաքին: 42 կիլոմետրը էր մնացել, որ նրանք մտնեին հույների այդ գլխավոր ու գեղեցիկ քաղաքը: Բայց Աթենքի մոտ՝ Մարաթոնի դաշտում, հույները հաղթեցին պարսկական զորքին: Հույն զինվորներից մեկը, վազքով անցնելով 42 կիլոմետրը, հասավ Աթենք, հայտնեց հաղթության ուրախալի լուրը և անշնչացած ընկավ: (Այս դեպքը պատճառ դարձավ, որ մարզական ձևերի մեջ մտցվի մարաթոնյան վազքը):

Մ. թ. ա. 480 թ. Աքեմենյան Պարսկաստանի զորքերը նորից արշավեցին Հունաստան: Այս անգամ զորաբանակը ղեկավարում էր պարսից Քսերքսես արքան: Նրա զորքերի մեջ կար հայկական մի բանակ: Հույները դիմադրություն կազմակերպեցին Թերմոպիլե կոչվող լեռնանցքում: Այնտեղ 300 հույն մարտիկներ, շրջապատված պարսից զորքից, պատերազմեցին ու զոհվեցին մինչև վերջին զինվորը: Ճիշտ է, հույները պարտվեցին, բայց ցույց տվեցին իրենց հայրենիքի համար ամուր կանգնելու ազգային ոգին: Քսերքսեսը գրավեց Աթենքը, բայց երկար չմնաց այնտեղ: Նրա նավատորմը ծովում պարտվեց հույներից, և պարսկական ցամաքային զորքն էլ սկսեց նահանջել: Պլատեա քաղաքի մոտ հույները վերջնականապես հաղթեցին պարսկական զորքերին, և Քսերքսեսի բանակը նահանջեց Հունաստանից: Հունական

---

Ուղղում. նախորդ համարում, զրույց 20-րդի հետ տպագրված քարտեզի վրա ԲԱԿԱՐԻԱ-ի փոխարեն կարդալ՝ ԲԱԿՏՐԻԱ

զորքը հետապնդելով անցավ Հելլեսպոնտոսը (Դարդանելի նեղուցը) և մտավ Փոքր Ասիա:

Հայկական զորքերը քաջաբար կռվում էին պարսիկների կողքին ուս-ուսի, և հույների նկատմամբ հաղթանակի էին ձգտում, թեև, իհարկե, հայերի վերջնական նպատակը կրկին անկախություն ձեռք բերելն էր:

Մ. թ. ա. 401 թ-ին, երբ Պարսից Աքեմենյան պետության թագավորն էր Արտաքսերքսես II-ը, նրա դեմ ապստամբեց իր հարազատ եղբայրը՝ Փոքր Ասիայի սատրապ Կյուրոս Կրտսերը: Այս Կյուրոսն ուզում էր եղբորը գահընկեց անել և դառնալ թագավոր: Հույն նշանավոր փիլիսոփա և զորավար Քսենոփոնը տասը հազար հունական զորքով միացավ Կյուրոսին: Նրանք արշավեցին Միջագետք՝ Արտաքսերքսես արքայի դեմ: Արտաքսերքսեսի բանակում նույնպես հայկական զորաբանակ կար՝ հայոց Երվանդ թագավորի գլխավորությամբ: Կյուրոս Կրտսերը սպանվեց, նրա զորքերը պարտվեցին: Հունական բանակը Քսենոփոնի ղեկավարությամբ սկսեց նահանջել: Հույները նահանջում էին Մեծ Հայքի միջով: Նրանց նպատակն էր հասնել Սև (Պոնտական) ծովին: Նրանք հարավից՝ Սասունի լեռներից մտան Հայք և հասան մինչև Սև ծով:

Քսենոփոնը ամեն օր իր տետրում գրում էր կատարված դեպքերի, անծանոթ վայրերի մասին: Հետագայում նա իր այդ նշումներն օգտագործելով՝ գրեց «Տասը հազարի նահանջը» գիրքը (հունարեն՝ «Անաբասիս»), որի մեջ մանրամասն նկարագրեց Հայաստանի այն վայրերը, որոնցով ինքն ու հունական զորքը անցել են:

Այդ գիրքն այսօր կարևոր աղբյուր է մ. թ. ա. 5-րդ դարի վերջի և 4-րդի սկզբի Հայաստանի վիճակն ուսումնասիրելու համար:

Քսենոփոնը հիմնականում պատմում է հայկական գյուղերի մասին: Նահանջող



Հայ իշխան (Աքեմենյան կայսրության ժամանակաշրջանից)



Արևմտյան Հայաստանի սատրապ-թագավոր Տիրիբազը

հույն բանակը անցել է հայկական բազմաթիվ գյուղերով: Հայոց քաղաքներից ու բերդերից հույները խուսափել են, ըզգուշանալով հայկական զորքերի հետ ընդհարվելուց:

Քսենոփոնի պատմածներից իմանում ենք, որ հայերը ամենից շատ զբաղվում էին երկրագործությամբ. ցանում էին ցորեն, գարի, քնջութ: Թխում էին ցորենի և գարու հաց: Գարուց պատրաստում էին գարեջուր: Տարածված էր այգեգործությունը, հատկապես խաղողի, նուշի մշակությունները: Խաղողից հայերը պատրաստում էին չամիչ, գինիներ: Քսենոփոնի վկայությամբ՝ գինիները հայերը պահում էին հողի տակ, որ հնանան և անուշահոտ դառնան: Քնջութից, նուշից, բևեկնից ձեթեր էին պատրաստում:

Քսենոփոնը գրում է, որ Հայաստանը

շատ բարեկեցիկ երկիր է, պարենի մեծ պաշարներ ունի, ժողովուրդն ունևոր է:

Հայաստանի ընտանի կենդանիներից Քսենոփոնը հիշատակում է կով, ձի, ոչխար, այծ, խոզ, տնային թռչուններ և այլն: Պարզվում է, որ հայերը պարսից թագավորին որպես հարկ նժույգներ էին ուղարկում: Պետք է ասել, որ Հայքի նժույգները շատ հնուց էին հայտնի, հարևան երկրները Հայաստանից միշտ էլ ձի էին գնում:

Քսենոփոնը նկարագրում է նաև հայկական գյուղական տները՝ գետնափոր ու երդիկներով: Շատ կողմերով դրանք նման են միջնադարյան Հայաստանում և մինչև 20-րդ դարի 30-ական թվականները եղած գյուղական երդիկավոր տներին:

Ամեն հայկական գյուղ, ինչպես վկայում է Քսենոփոնը, ուներ գյուղապետ, որը ավելի ուշ կոչվում էր տանուտեր:

Քսենոփոնը խոսում է նաև Հայաստանի սահմանների մասին, նրանից իմանում ենք, որ այն ժամանակ էլ պահպանվել էին Արարատի հայոց թագավորության ժամանակների սահմանները. հյուսիս-արևմուտքից՝ Սև ծովը, հյուսիսից՝ Քուռ գետը, հարավից՝ Միջագետքը: Ըստ Քսենոփոնի՝ այն ժամանակ Հայաստանն ընդհանրապես և Արևմտյան Հայաստանը առանձին վարչական միավորներ էին: Դա ևս ճիշտ է: Հայքում, ինչպես արդեն գիտենք, Աքեմենյանների ժամանակ երկու սատրապություն կար՝ արևելյան և արևմտյան:



Դրամ Ալեքսանդր Մակեդոնացու դիմապատկերով

Արևելյան Հայքի սատրապ-թագավորը Երվանդն էր (հունարեն Օրոնտաս), որն իր զորքով Արտաքսերքսեսի հետ միասին կռվել էր Կյուրոս Կրտսերի և հույների բանակի դեմ: Այն ժամանակ գրեթե բոլոր հայ թագավոր-սատրապները իրենց Երվանդունի տոհմի անունով Երվանդ էին կոչվում:

Արևմտյան Հայաստանում թագավոր-սատրապ էր Տիրիբազը, որը, սակայն, ենթակա էր Երվանդին:

Հետաքրքրական է, որ Քսենոփոնը հայերի որոշ խմբակցությունների տարբեր անուններ է տալիս. օրինակ, Տայքի հայերին անվանում է տաոխներ, հայոց Բասեն գավառի բնակիչներին՝ փասիաներ, Մեծ Հայքի հյուսիս-արևմտյան լեռներում բնակվող հայերին անվանում է խալդայներ կամ խալիբներ, Երվանդ թագավորի զորքի հայ մարտիկներին՝ մարդեր:

Այսպես Հայքը Պարսից Աքեմենյան հսկա պետության կազմում մնաց մինչև մ. թ. ա. 331 թվականը:

Ալեքսանդր Մակեդոնացին Հունաստանի հյուսիսից՝ Մակեդոնիայից, արշավեց դեպի արևելք և այդ թվականին Գավգամելայի հայտնի ճակատամարտում ջախջախեց Աքեմենյան Պարսկաստանի զորքերին և գրավելով Բաբելոնը՝ դարձրեց այն իր մայրաքաղաքը: Հայաստանը անկախություն ձեռք բերեց:

Աքեմենյան վերջին թագավորը Դարեհ III-ն էր, որ սպանվեց ճակատամարտում: Հայկական երկու զորաբանակ կռվում էին պարսից զորքերի կողքին, բայց Ալեքսանդր Մակեդոնացու հույն-մակեդոնական զորքերն ավելի ուժեղ գտնվեցին: Մակեդոնացին Հայաստան չմտավ, և Հայքը դրանով շահեց. իրեն հռչակեց անկախ:

Հայերը մեծապես մասնակցում էին Աքեմենյան պետության ղեկավարմանը ու ռազմական գործողություններին: Հայոց թագավորությունը, թեև կախյալ վիճակում, պահպանվում էր: Եվ երբ Աքեմենյան պետությունն ընկավ Ալեքսանդր Մակեդոնացու հարվածներից, Հայքը պատրաստ էր վերականգնելու իր անկախությունը:

Ալեքսանդր Մակեդոնացու այդ հաղթանակով Հարավ-արևմտյան Ասիայում սկիզբ առավ նոր դարաշրջան, որը կոչվում է հելլենիստական:

(շարունակելի)

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# ԳՈՅԱՅԻ ԻՍՊԱՆԱԿԱՆ ՀՅՈՒՐԱԽԱՂԸ



«1808 թվականի մայիսի 3-ի գնդակահարությունը» (հատված)

Երջանկություն է տեսնել Գոյայի ըստեղծագործությունները իր իսկ հայրենիքում: Մանավանդ, եթե ճամփորդությունը վերջանում է, և դու անցել ես իսպանական քաղաքներով, տեսել ես նրա բնությունը, դիտել բազմաթիվ դեմքեր՝ կանանց թե տղամարդկանց, ճանաչել կրակոտ, անզիջում իսպանացուն... Դրանք քայլ առ քայլ մոտեցրել են քեզ մեծ նկարչի ստեղծագործություններին:

Հիշում եմ, Սարագոսայի Սուրբ Պիլարի տաճարի ավանդատանը մենք տեսանք Գոյայի որմնանկարների էսքիզները, իսկ քիչ հետո կամարների վրա տեսնելու էինք նաև իսկական որմնանկարները: Եվ այդ «քիչ հետոն» ինձ բավական երկար թվաց:

Գլխավերևում իրար հաջորդող գըմբեթները՝ Գոյայի վրձնով նկարազարդված: Նրանցից մեկը մաքրված էր, իսկ

մյուսները՝ մոմերից խամրած՝ սպասում էին իրենց հերթին: Սուրբ Պիլարի տաճարի առջև Գոյայի արձանն էր: Ցածում, սալահատակին, երկու զույգի՝ արձանախումբ՝ կնոջ և տղամարդու: Արդյո՞ք Գոյայի հերոսներն էին, որ հիմա հսկում էին նրա հուշարձանը: Իսկ Տոլեդոյում տեսանք Գոյայի «Քրիստոսի առջև» նկարը, որին ուզում ես կրկին ու կրկին վերադառնալ: Գոյան տարբերվում էր բոլորից: Քրիստոսը շրջապատված է մարդկանցով, և այդ պատկերը Գոյան ուրի՛շ աչքերով է տեսել: Այդ ին՞չն է թաքցնում մարդու հոգին, որ նկարչի վրձինը լույս աշխարհ է բերել: Եվ հիմա այստեղ, Մադրիդի աշխարհահռչակ Պրադոյում... շքեղ գանձատուն՝ տարբեր ժողովուրդների մեծահռչակ նկարիչների գործերով:

Ռուբենսի նկարների այսպիսի հավաքածու երևի ոչ մի տեղ չկա, նույնիսկ իր հայրենիքում: Յորդանս, Ռիբերա, Մուրիլիո, Վան Դեյկ, Վելասկեզ... Տարբեր դարաշրջանների մեծագույն գեղագետ «պատմիչներ», մարդկային ապրումների նրբագույն դրսևորումներ, հաղթանակի գույներ, պարտության գույներ, սիրո և մահվան գույներ: Ինչե՞ր չի կարելի «գրել» վրձնով: Դահլիճներից մեկում, Ռիբալտայի ստեղծագործության առջև, հիպնոսված նստած էր մի երիտասարդ ընտանիք. երեխան քնած էր սայլակում, իսկ ծնողները, գլուխ-գլխի, վայելում էին նկարի գեղեցկությունը, որից կարծես հոգևոր երաժշտություն ու զգացմունքների մաքրություն էր հորդում:

Թանգարանից դուրս կգաս ու փողոցում կհանդիպես Մուրիլիոյի հերոսներին՝ կենդանի, կրքոտ, վճռական իսպանացիների:

Ինչքա՜ն մարդաշատ էր կլոր դահլիճը, որտեղ ցուցադրվում էր Վելասկեզի հայտնի նկարը՝ «Ինֆանտները»: Նկարը նոր էր վերադարձել նորոգման արվեստանոցից՝ իր անցած ուղու մանրակրկիտ պատմության հետ միասին: Բազմաթիվ լուսապատկերները ցույց էին տալիս, թե նկարիչն ինչպես է քայլ առ քայլ կատարելության հասցրել իր հերոսներին: Իսկ հետո՝ տեղեկություններ այն մասին, թե ժամանակի ընթացքում նըկարն ինչ վնասվածքներ է ստացել, որտեղ է քերծված կամ պատռված, որտեղ է աղտոտված: Երևում են նաև կեղծված ու ջնջված հատվածները: Վելասկեզի օգտագործած ներկերի բաղադրությունն է ստուգվել, և ստեղծվել են ներկեր՝ հնին համապատասխան: Այդ բոլոր մանրամասներին ծանոթանալուց հետո, կրկին վերադառնում ես «Ինֆանտներին»՝ թարմ, հանդիսավոր, պերճաշուք: Այցելուները չեն կարողանում հեռանալ նկարից:

Բոլոր նկարներին բախտ չի վիճակվում ապրել անխաթար, ինչպես էլ Գրեկոյի «Իշխան Օրգասի մահը» կտավին:

Այս սրահում հատկապես իմ ուշադրությունը գրավեց, թե ինչպես են երեխաներն ու ծնողները միասին դիտում նկարը, հիանում, մտքեր փոխանակում: Մեծերը փոքրերի ուշադրությունն էին հրավիրում նկարի այս կամ այն հատվածին, բացատրում: Մի՞թե հնարավոր էր այս բոլորի կողքով անտարբեր անցնել, թեև Պրադոյից դուրս գալիս ես որոշել էի Գոյայի բազմաթիվ ստեղծագործություններից միայն երկուսի մասին խոսել՝ «Մախան հագուստով» և «Մերկ Մախան»:

Անցա Գոյայի դահլիճներով: «Մարիա Լուիզան ձիու վրա», «Կարլոս Վեցերորդի ընտանիքը», «Կարդինալ Բուրբոն», «Մարիա Լուիզան». Կարմենի հագուստով, թեթև, թափանցիկ, բայց դեմքը սատանայի արքայակը լինի կարծես: Գոյան այդպես էր տեսել նրան ու նկարել: Մինչ պալատական մյուս նկարիչները գունազարդել են թագավորներին, Գոյան տեսել է նրանց հոգին. Գոյայի հավատամքն էր մարդկանց երեսին ճըշմարտությունն ասել: Այս նկարները դիտելիս է, որ խորապես հասկանում ես՝ նկարիչներն իրենց ձևով են կռվում անարդարության, կեղծիքի, ստորության ու դաժանության դեմ. կեցվածքը, ձեռքերը, դեմքը դառնում են հոգու հայելի, և ռակեհուտ զգեստ-շրջանակներն էլ չեն փըրկում մարդուն. թեև նա երկրի առաջին դեմքն է ըստ օրենքի, բայց ամենավերջինն է իրականում:

Այսպես դիտելով հասա վերջին դահլիճն, ու կանգնեցի արձանացած: Նույն պատի վրա, կողք-կողքի ցուցադրված էին երկու նկար՝ «Մախան հագուստով» և «Մերկ Մախան»: Փշաքաղվեցի ոտից գլուխ: Ահա թե ինչ է նշանակում մարդկային գեղեցկություն, երբ մարմնի գեղեցկությանը գումարվում է նաև հոգու գեղեցկությունը: Պետք չէ իմանալ կեն-



Թերթ՝ «Կապրիչիո» շարքից

սագրական մանրամասներ՝ հասկանալու համար, թե ինչ բուռն սիրո խոստովանություն են այս նկարները: Գեղեցկության փառաբանություն, գույների, լույսի, ապրումի հավերժ կենդանի երկու պատկեր՝ նույն կնոջ կյանքից: Կենդանի, ապրող դեմք, խոսող աչքեր: Այսպիսի հարյուրավոր իսպանուհիների հանդիպեցինք երկրի տարբեր քաղաքներում:

Հանկարծ ծանոթ ձայն լսեցի: Ծրջվեցի՝ Կարմենն է, Մադրիդի առաջին օրվա մեր էքսկուրսավարը: Նա մի երիտասարդի էր ուղեկցում ու պատմում թանգարանի մասին: Ես գլխով բարևեցի: Կարմենը հիշեց. «Սովետական խմբից ես»: Հետո ուզեց ինչ-որ բան ասել, բայց մենք իրար չէինք հասկանում: Նա գըտավ հնարը: Բռնեց, թևիցս ու տանելով Մախայի ոտքերի կողմը, ձեռքերն իրարից հեռացնելով, ասաց. «Այստեղից նայիր, կինն ի՜նչ բարձրահասակ է», հետո անցավ գլխի կողմը և, ձեռքերը մոտեցնելով իրար՝ ավելացրեց. «Տես, այս կողմից նայելիս, կինը փոքրահասակ է»: Եվ ժըպտալով, թևիցս բռնած, նա մի քանի անգամ նկարն ինձ ցույց տվեց մեկ ոտքերի, մեկ գլխի կողմից: Եվ գաղտնիք հայտնած մարդու նման խորամանկ ժըպտալով, հրաժեշտ տվեց:

Իրոք, նա ինձ պարզեց բանալին՝ հասկանալու համար, թե Գոյան ինչ հընարքով է հասել այդպիսի կախարդող ներգործության:

Հնարավոր չէ ասել, թե որն էր ավելի գեղեցիկ՝ հագնվա՞ծ կինը, որը հպարտ էր, ազատ, անկաշկանդ, թե՞ մերկ կինը, որի մարմնից լույս էր ճառագում և որին չէր հաջողվել թաքցնել ամոթխածության զգացումը: Երկու նկարներում էլ կնոջ հագուստի և մարմնի ստվերները թրթռում էին գահավորակի շղարշե ծածկոցների վրա: Նախորդ սրահների պալատական տիկնանց նախանձոտ ու վրիժառու դեմքերից հետո...

Կարմենը գնաց: Ես նրան այլևս չեմ կարող հայտնել իմ շնորհակալությունը: Բայց հիմա, երբ գրում եմ այս տողերը, մտովի դիտում եմ նկարը տարբեր կողմերից և հիշում, թե ինչպես ընկա նկարչի հյուսած «որոգայթը»:

Հայացքիդ հետ, նայած թե որ կողմից ես նայում, Մախայի դեմքը շրջվում է ու նայում քեզ: Կարծես ոչ թե դու ես իրեն հետևում, այլ ինքը քեզ: Նկարի այս հատկությունը ես նկատեցի բավական երկար դիտելուց հետո: Մինչ այդ, ամենայն մանրամասնությամբ ես էի դիտում նկարները, իսկ հիմա իրենք էին ինձ հետևում, ուղեկցում հայացքով: Եվ աչքերն աստիճանաբար ստանում են հետևողի ու կողքից դիտողի արտահայտություն: Նույնիսկ դիմացից ներգործությունը նույնն էր՝ նկարված կինն ինձ ավելի լավ էր տեսնում, քան ես իրեն: Հայացքն այնքան կենդանի էր և սուր, որ ընկնում էիր աչքերի իշխանության տակ և նկարի մյուս մասերն այլևս չէիր տեսնում:

Տարբեր ազգերի մարդիկ հմայված դիտում էին նկարները (մեկը նույնիսկ գաղտագողի լուսանկարեց) և մախաների հայացքների ուղեկցությամբ հեռանում:

Դուրս եկա սրահից, մի քանի քայլ հեռանալուց հետո կրկին վերադարձա, որովհետև մյուս օրը մեկնելու էինք Մադրիդից: Հետո, ամբողջությամբ լցված Գոյայի գույներով, փնտրեցի ճանապարհ՝ տեսածս դահլիճներով չանցնելու համար: Լավ էր, որ նկատեցի երկար միջանցքը. ակնոցներս հանեցի ու առանց շուրջս նայելու՝ արագ քայլերով դուրս եկա Պրադոյից:

# ՄԱՔՈՒՐ ՆՅՈՒԹ

Նկարը՝ ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



Առօրյա խոսակցության մեջ հաճախ լսում ենք. «Բյուրեղյա մաքրություն ունի այս մարդը» արտահայտությունը, որը գիտական քննադատությանը չի կարող դիմանալ: Կան բյուրեղներ, որոնք առաջին հայացքից խիստ մաքուր են թվում, սակայն դրանցում կարող են զգալի խառնուրդներ լինել: Սովորական անզեն աչքը, շատ հաճախ նաև ֆիզիկաքիմիական ժամանակակից սարքերը ի զորու չեն միանգամից պատասխանելու այն հարցին, թե ինչպիսի մաքրություն ունի այս կամ այն բյուրեղը և, վերջապես, նյութը:

Ի՞նչ ենք հասկանում ընդհանրապես մաքուր նյութ ասելով: Պատասխանը միակն է՝ մաքուր նյութը պետք է պարունակի միայն մեկ տեսակի ատոմներ կամ մոլեկուլներ: Երբ ասում ենք մաքուր երկաթ, պիտի հասկանալ, որ երկաթի տվյալ փորձանմուշում կան միմիայն երկաթի ատոմներ: Կամ մաքուր ջուր՝ նշանակում է՝ դրանում կան միայն ջրի մոլեկուլներ:

Բնությունը, սակայն, մեզ մաքուր նյութեր շատ հազվադեպ է տրամադրում: Մարդն իր կարիքները հոգալու համար մշակել և մշակում է մաքուր նյութերի ստացման ֆիզիկական, քիմիական և այլ եղանակներ:

Չպետք է կարծել, թե մեր կենցաղում օգտագործվող բոլոր նյութերը պետք է շատ մաքուր լինեն: Սովորական ջուրը, որը մենք խմում ենք, քիմիապես խիստ անմաքուր է: Այն իր մեջ պարունակում է թթվածին, ածխաթթու գազ, տարբեր տեսակի աղեր, մեծ քանակությամբ մանրէներ և այլն: Այս նյութերը, սակայն, որևէ վտանգ չեն ներկայացնում մարդկանց առողջության համար: Ծորակից վերցրած ջուրը քիմիական լաբորատորիաներում արդեն չի կարելի կիրառել մի շարք գիտահետազոտական աշխատանքների համար: Այդ պատճառով էլ ջուրը հատուկ հարմարանքների միջոցով մաքրում են և ստանում թորած ջուր: Շատ հաճախ առավել մաքուր ջուր ըստանալու համար, թորած ջուրը ենթարկում են կրկնակի և եռակի թորման: Եթե խմենք այդ թորած ջուրը, չենք հագենա, քանի որ այն զերծ է աղերից, լուծված թթվածնից, առանց որոնց խմելու ջուրը համ չի ունենա:

Բոլորին հայտնի է, որ առանց երկաթի հնարավոր չէ պատկերացնել ժամանակակից արտադրությունը և կյանքն առհասարակ: Սակայն փաստ է նաև, որ մարդկությունը մաքուր երկաթի կարիք գրեթե չի զգում: Չէ՞ որ մաքուր երկաթը



չափազանց փափուկ է մեքենաներ, հաս-տոցներ, ռելսեր, խողովակներ և տրանս-պորտային միջոցներ պատրաստելու հա-մար: Դրա փոխարեն ոչ մաքուր երկա-թի համաձուլվածքների (պողպատի և չուգունի) արտադրությունը օրեցօր ա-ճում է: Պողպատում երկաթի պարունա-կությունը չպետք է անցնի 99, իսկ չու-գունում՝ 96 տոկոսից:

Քիմիական շատ ու շատ ռեակտիվնե-րի մինչև 99 տոկոս մաքրությունը լիովի բավարարում է գիտահետազոտական բազմաթիվ խնդիրներ իրագործելու հա-մար: Քիմիական շատ նյութերի ստա-ցումը արտադրության մեջ մեծ մասամբ իրականացվում է մի շարք փուլերով: Մեծ մասամբ անհրաժեշտություն չի լի-նում միջանկյալ փուլերում օգտագործել շատ մաքուր, բնականաբար և թանկ քի-միական նյութեր: Չէ՞ որ վերջում ըս-տացված արգասիքը ենթարկվելու է ման-րակրկիտ մաքրման:

Կան սակայն գիտության, տեխնիկայի, քիմիական նյութերի կիրառության այլ բնագավառներ ևս, որտեղ պետք են ոչ թե մաքուր, այլ գերմաքուր նյութեր: Բը-ժըշկության մեջ, օրինակ, անհրաժեշտ են 100 տոկոսանոց մաքրությամբ դեղա-նյութեր: Չէ՞ որ այդ նյութերի մի մասը ուղղակի ներարկվում է մարդու երակի մեջ: Գերմաքուր նյութերի պահանջը հատկապես մեծ է կիսահաղորդիչների արտադրության, ռադիոտեխնիկայի, է-լեկտրոնիկայի, տիեզերագիտության, կի-բեռնետիկայի և այլ բնագավառներում:

Անչափ հետաքրքիր է, որ նյութերի մի շարք «հրաշագործ» հատկություններ ի հայտ են գալիս միմիայն գերմաքուր վի-ճակներում: Այսպես՝ խառնուրդներից բացարձակապես զերծ գերմանիումը և սիլիցիումը դառնում են հիանալի կիսա-հաղորդիչներ: Կամ, ասենք, մոլիբդենը երկար տարիներ դիտվում էր որպես փխրուն մետաղ: Գիտնականների տըք-նաջան աշխատանքի շնորհիվ հնարա-վոր եղավ ստանալ շատ մաքուր մոլիբ-դեն, որը կարելի է հիանալի կոփել ու կռել:

Հայտնի է, որ երկաթը քիմիապես բա-վականին ակտիվ մետաղ է, և օդում՝ խոնավության և ջերմության ազդեցու-թյամբ, հեշտությամբ օքսիդանում-ժան-գոտվում է: Սակայն այսօր էլ Դելիում պահպանվում է հինգերորդ դարի սկըզ-բում կառուցված երկաթյա մի սյուն, որը բոլորովին չի ժանգոտվում: Ինչպե՞ս վեր-ծանել Դելիի չժանգոտվող երկաթյա սյան գաղտնիքը: Միակ վարկածն այն է, որ սյունը պատրաստված է գերմաքուր եր-կաթից: Հնարավո՞ր է արդյոք, որ մեր թվարկության V-րդ դարում հնդիկները կարողանային ստանալ այդպիսի գերմա-քուր երկաթ: Այս հարցը դեռ չի ճշտված:

Դժվար, երկարատև գործ է գերմաքուր նյութերի ստացումը: Նման աշխատանք-ների մեջ ընդգրկվում են քիմիկոսներ, ֆիզիկոսներ, մաթեմատիկոսներ, կեն-

սաքանները և, ինչ խոսք, հմուտ ինժեներ-տեխնոլոգներ: Սովորական քիմիական լաբորատորիաներում հնարավոր չէ ըստանալ գերմաքուր նյութեր: Նման նյութերի ստացման համար նախատեսված շենքերը կառուցվում են այն հաշվով, որ նույնիսկ փոշին դրսից ներս չթափանցի: Այդպիսի արտադրամասերը սնվում են հատուկ հարմարանքների օգնությամբ մաքրված օդով, հատակը և պատերը շատ հաճախ սալարկվում են կամ ներկվում հատուկ ներկերով: Այդպիսի սենյակներում լաբորանտները, ինժեներական անձնակազմը և գիտաշխատողները հագնում են ախտահանված խալաթներ՝ պահպանելով անձնական հիգիենայի բոլոր կանոնները:

Պատահել է նաև, որ անցանկալի խառնուրդները թափանցել են մաքուր նյութերի մեջ: Մոսկվայի գիտահետազոտական լաբորատորիաներից մեկում իրականացվում էր բարիումի սուլֆիդի սինթեզը: Այդ նյութն ունի լյումինաֆոր հըրաշալի հատկություն: (Հիշենք, որ լյումինաֆորները արհեստական նյութեր են, որոնք լուսային, ռենտգենյան և կամ էլեկտրոնների փնջի այլ ազդակների ներգործությամբ դառնում են լուսարձակող):

Հանկարծ բարիումի սուլֆիդի ստացման պրոցեսն ընդհատվում է: Ստացված նյութը չափազանց անորակ է լինում, թույլ արտահայտված լյումինեսցենցիոն հատկությամբ: Պարզվում է, որ սինթեզը իրականացնող լաբորանտը բարիումի սուլֆիդը ստանալուց առաջ աշխատել էր սովորական երկաթյա խարտոցով և մոռացել էր լվանալ ձեռքերը: Նրա ձեռքից բարիումի սուլֆիդին էր անցել երկաթի աննշան քանակություն, որի պատճառով էլ մի քանի ժամվա ընթացքում ստացված արժեքավոր այդ նյութը խոտանվել էր:

Գերմանացի նշանավոր ֆիզիկոս Վերներ Հեյզենբերգը իր հուշերում նկարագրել է հետևյալ հետաքրքիր դեպքը: Լաբորատորիաներից մեկում, ուր աշխատում էր նա, կատարվում էր փորձ՝ տարրական մասնիկների ուսումնասիրման ուղղությամբ: Սարքն անսպասելիորեն գրանցել է ոսկու ատոմի միջուկի առկայությունը: Մի քանի օրից պարզվում է, որ փորձ կատարող ֆիզիկոսը աշխատել է... ոսկյա շրջանակներ ունեցող ակնոցով:

ԱՍԱՏՈՒՐ ՓԱՇԱՅԱՆ



## Դպրոց

Երբ ասում ենք մարզադպրոց, պատկերացնում ենք հարմարավետ մարզադահլիճ՝ անհրաժեշտ մարզագույքով ու այլ օժանդակ սենյակներով:

Կար ժամանակ, երբ 26 կոմիսարների անվան շրջանի «Օլիմպիական ռեզերվի» մանկապատանեկան մարզադպրոցը աչքի էր ընկնում ոչ միայն ծանրակշիռ նըվաճումներով, այլև իր դահլիճով, բացօթյա խաղահրապարակներով և մի քանի օժանդակ սենյակներով: Պատանեկան սպորտի այս դարբնոցը երեք տասնամյակ շարունակ բարձր կարգի մարզիկներ է տվել հանրապետության տարբեր տարիքային խմբերի վոլեյբոլի և բասկետբոլի հավաքականներին, մեծապես նպաստելով այս մարզաձևերի պրոպագանդմանն ու մասսայականացմանը:

Այստեղից են միջազգային ասպարեզ դուրս եկել վոլեյբոլիստներ, մոնրեալյան օլիմպիադայի արծաթե մեդալակիր, Սովետական Միության ու Եվրոպայի կրկնակի չեմպիոն, միջազգային կարգի ըսպորտի վարպետ Նինա Մուրադյանը, պատանիների Եվրոպայի չեմպիոն, միջազգային բազմաթիվ մրցաշարերի մասնակից Սերոբ Փլավչյանը, Պետրոս Սարգըսյանը, բասկետբոլիստուհի Ռուզաննա Վահրադյանը, որը հաջողությամբ հանդես է եկել մեր հանրապետության առաջատար թիմի՝ «Հատիսի» կազմում:

Վերջին խոշոր նվաճումը, որին հասավ մարզադպրոցը, 15—16 տարեկան վոլեյբոլիստների 1979 թվականի Սովետական Միության առաջնությունում մեր պատվիրակների նվաճած արծաթե պարգևներն էին: Նվաճում, որը հայկական վոլեյբոլի պատմագրքում առայժմ միակն է...



## արձակալական հիմունքներով

Լուսանկարները՝ ՎԼԱԴԻՄԻՐ ՍԱՐՈՅԱՆԻ

Էլի կարելի է պատմել հաջողությունների մասին, նշել, որ դպրոցականների համամիութենական նախորդ՝ 17-րդ ըսպարտակիադայում հանդես եկան մարզադպրոցի 30 սաներ և այն, որ մեր հանրապետության բասկետբոլիստուհիները գրավեցին 10-րդ տեղը, շատ բանով պայմանավորված էր նաև այս դպրոցի մարզուհիների մասնակցությամբ: Նրանցից շատերը հանրապետության հավաքականի դրոշի ներքո հանդես եկան համամիութենական պատանեկան առաջին խաղերում:

Թվում էր իր կենսագրության չորրորդ տասնամյակը թևակոխած մարզադպրոցը պետք է զարգացներ հաջողությունները, սակայն տեղի ունեցավ անսպասելին: 1979 թվականին վթարային լինելու պատճառով մարզադահլիճը քանդեցին: Անցած ութ տարում նոր մարզադահլիճի կառուցման որոշումներ քիչ չեն եղել, եղել են նաև հաստատված նախագծեր ու նախահաշիվներ, սակայն թղթի վրա զարգացնել հայկական վոլեյբոլն ու բասկետբոլը հնարավոր չէ:

Ասել, թե մարզադպրոցը անցած ութ տարում կորցրել է իր դեմքն ու ձեռագիրը, սխալ կլինի: Այսօր էլ մարզումները ընթանում են ըստ ուսումնական պլանի, սակայն հետևել բոլոր 51 խմբերի աշխատանքներին, ինչպես վկայում է դպրոցի տնօրեն, հանրապետության վաստակավոր մարզիչ Էդուարդ Մարգարյանը, պարզապես անհնար է: Պատանիները մարզումները անցկացնում են մեկ տասնյակից ավելի հանրակրթական դպրոցների մարզադահլիճներում, որոնք իրենց չափերով շատ ավելի փոքր են պահանջվածից:

Ժամանակակից սպորտը դժվար է պատկերացնել առանց գիտության աջակցության, առանց բիոռիթմիկական քարտերի և ընդհանրապես այն ամենի, ինչ նպաստում է մարզական վարպետության բարձրացմանը: Իսկ նման պայմաններում, երբ դպրոցի սաները մարզումները անցկացնում են ոչ թե ըստ իրենց որոշակի ուսումնական պլանի, այլ միայն այն ժամանակ, երբ տվյալ դպրոցներում մարզադահլիճները ազատ են դասերից, հնարավոր չէ առավելագույնի հասցնել մարզումային ծանրաբեռնվածությունը: Այնպես որ, ութամյա լռությունից հետո, գոնե այժմ համապատասխան կազմակերպությունները պետք է զբաղվեն 26 կոմիսարների անվան շրջանի խաղային ձևերի մարզադպրոցի ճակատագրով, որպեսզի այն վերջապես դուրս գա փակուղուց և վերականգնի նախկին՝ «Օլիմպիական ռեզերվի» բարի համբավը...

ՀՈՎՀ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

● Ուղղաթիռների համար անսովոր աշխատանք են գտել գյուղատնտեսական օդերևութաբանության համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի մասնագետները։ Նրանք առաջարկում են օգտագործել պտուտակաթևային մեքենաները ուշ գարնանը, թեթև ցրտահարությունների դեմ պայքարելիս։ Ցածր բարձրություններում թռչելիս, վայր իջնող օդի հոսքը, որը կարգավորվում է մեքենայի պտուտակով, դուրս է հրում գետնամերձ սառը օդը։ Հարց է ծագում՝ դեպի ո՞ւր։ Իհարկե՝ վեր։ Ստացվում է մի տեսակ խողովակ, որի միջով շարժիչի տաքացրած օդը որոշ ժամանակով իջնում է ներքև։ Անսովոր պաշտպանության փորձարկումները կատարվեցին բնական պայմաններում, Հայաստանի տարածքում։ Ուղղաթիռը հայտնվում էր գյուղատնտեսական հողահանդերի վրա արևածագից կես ժամ առաջ և թռչում էր ժամում 20—25 կմ արագությամբ, գետնից 20 մ բարձրության վրա։ Մեկ ժամվա թռիչքի ընթացքում ուղղաթիռը ցրտահարությունից փրկեց 70 հեկտար տարածության վրա գտնվող ծիրանի բերքը։

● Երկու հնդիկ պատանիներ՝ Ռենին և Ռամը Սարաու գյուղից (Մանիպուրի նահանգ), վաղ առավոտյան գնացին խոտ հնձելու։ Երբ ընկերները մոտեցան անտառի եզրին, թավուտից հանկարծ դուրս ցատկեց վագրը և Ռամին գետին տապալեց։ Ռենին իրեն չկորցրեց։ Նա մի մեծ քար վերցրեց, հարվածեց գիշատիչի գլխին, և... վագրը այդ դիպուկ հարվածից գետին գլորվեց։ Գյուղացիները աղմուկի կողմը վազեցին։ Ոմանք կապոտում էին վագրին, մյուսները զբաղված էին Ռամի վերքերով։ Բարեբախտաբար, նրա վերքերն աննշան էին։

Մասնագետների կարծիքով, դա դեռևս միակ հայտնի դեպքն է, երբ վագրին հաղթում են քարով, ճիշտ այնպես, ինչպես դա անում էին մեր հեռավոր նախնիք նախապատմական ժամանակներում։

● «Ստորգետնյա աչք» են ստեղծել ռումինական Կլուժ քաղաքի համալսարանի ֆիզիկոսները։ Սարքը, որը սնվում է գամմա-ճառագայթների աղբյուրով, հնարավորություն է տալիս հայտնաբերել երկրի մակերևույթից երկու մետր խորության վրա գտնվող օբյեկտներ։ Սարքը փորձարկվեց հնէաբանական ուսումնասիրությունների ժամանակ։ Գիտնականները հայտնաբերեցին հռոմեական ամրոցի պատեր, անտիկ վանքի հիմքեր և բնակելի շինությունների ավերակներ։

---

## ԺԱՄԱՆՑ

Հրթիռի մասերը վերադասավորել այնպես, որ ստացվի հնգաթև աստղ։





# ԺՊԻՏՆԵՐ

● — Մարկ, ի՞նչ է հոմանիշը:

— Դա բառ է, որ գրվում է մի ուրիշ բառի փոխարեն, որը չես կարող ճիշտ գրել:

● — Ի՞նչ է վերացական գոյականը, Թոմ:

— Չգիտեմ, միսս Ջոնս:

— Դու պետք է իմանայիր, քանի որ ես շատ եմ ասել: Դա մի բան է, որի մասին կարող ես մտածել, իսկ շոշափել չես կարող: Հիմա մի օրինակ ասա, խնդրեմ:

— Եռացող ջուր:

● Մի անգամ ուշ երեկոյան ֆիզիկոս Ռեզերֆորդը լաբորատորիաներում շրջելիս հանկարծ նկատեց իր աշակերտներից մեկին:

— Աշխատում եմ,— հպարտ ասաց երիտասարդը:

— Իսկ ի՞նչ էիք անում ցերեկը:

— Աշխատում էի:

— Իսկ վաղ առավոտյա՞ն:

— Աշխատում էի:

— Իսկ ե՞րբ եք դուք մտածում,—զայրացավ Ռեզերֆորդը:

● Անգլիացի գրող Օսկար Ուայլդին հարցրին՝ ինչ կարծիքի է մարդկության անցած ուղու մասին:

— Եթե քարանձավային մարդը հումորի զգացում ունենար, պատմությունը բոլորովին այլ կերպ կզարգանար:





---

«ՊԻՈՆԵՐ» № 5-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

1) Ցանկացած ֆուտբոլիստի մասնակցությամբ ցանկացած ֆուտբոլային խաղի հաշիվը նախքան խաղի սկսվելը բոլորդ էլ կարող եք ասել՝ 0:0:

2) Ռոդեն. «Մտածողը»

ՌՈԴԵՆ «ՄՏԱԾՈՂԸ»

3)

| | |
|---|---|
| ՎԱՐ | ՊԵՏ |
| ՊԵՏ | ՐՈՍԸ |
| ԵԿ | ԱՎ |
| ԱՎ | ԱՆ |

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.    ԻՆԴԵՔՍ՝ 77806

